1916 № 29.—Յուլիսի 17 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատրադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Գրաւոր հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԹԵՐԹԻՍ ԿԻՍԱՄԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻՆ

*«ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» խմբագրութիւնը խնդրում է կէս տարուայ բաժանորդներից՝ շուտով վերանորոգել բաժանորդագրութիւնը, այլապէս «Համբաւաբեր»-ի առաքումը կը դադարեցնենք յուլիսի 30-ից:*

## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Միմեանց ետեւից, գրեթէ երկու շաբաթուայ ընթացքում ընկան՝ Բաբերդը, Գիւմիւշխանէն, Քղին և վերջապէս Երզնկայի պէս մի կարեւոր հանգոյց, որը մի քանի թերթերի կարծիքով, Էրզրումը առնելու չափ մի յաղթանակ է ռուս զորքի համար: Ցամենայն դէպս, թիւրքական երրորդ զօրաբանակը ջախջախուած, թշնամին գրեթէ յաղթահարուած՝ այդ ուղղութեամբ Մեծ Հայքը բոլորովին մաքրուած է թիւրքերից: Այժմ դէպի արեւմուտք և դէպի հարաւ, բոլորովին սեղմելով յամառ թշնամուն տեղապում են որ զէնքը ցած դնի: Սակայն, առանձնապէս հայերի համար հետաքրքրող կէտը, թէ որքան հայ են մնացել տիրապետուած վայրերում—անչափ յուսահատ հետեւանքներ է պատկերացնում: Բաբերդից, օրինակ, ահա թէ ինչ է հաղորդում Քաղաքների Միութեան գլխաւոր լիազօրը: Այնտեղ գտնուող 2000 ընտանիք հայերից մնացել են մ ի ա յ ն ե ր կ ո ւ տ ղ ա մ ա ր դ: Բաբերդի շրջակայքում գտնուել են 100 կին և մանուկներ. կանայք բոլորն էլ գրեթէ յղի են... Քաղաքում տղամարդ գտնուեց միմիայն երկու հոգի, որոնք մի տարուց ի վեր պահուած են եղել վերնայարկ մառանի մի ծակի մէջ: Սոսկալի է այդ բեկորների գրութիւնը...*

*Ահա այդպէս են թիւրքերը մաքրում Հայաստանը հայերից և իրենց հեռացած վայրերում աւերակներ ու գերեզմաններ թողնում:*

*Արդեօք Գիւմիւշխանէից, Քղուց և Երզնկա հայաշատ քաղաքներից ինչպիսի սոսկումներ պիտի հանենք մեզ:*

*Ինչ վերաբերում է Միջագետք—Պարսկական ռազմաբեմին՝ թշնամին այդ կողմերում եռանդուն գործողութիւններով ու թուով բազմացած՝ վերջերս առաջ է անցել և ընդհարումներ ունեցել Բասրայի շրջանում անգլիացիների հետ: Ընդհանրապէս թշնամին այս կողմերում թէև մի քանի մասերում յաջողութիւններ է ունեցել, սակայն այդ յաջողութիւնների զարգացումը ջլատուել է և Խալիլ-փաշայի վրայ դրուած յոյսերը չեն արդարացել: Բաբերդ—Երզնկայի անկումը անշուշտ լրում առաջ պիտի բերի թշնամու շարքերում և Թիւրքիան դժուար այլևս կարող լինի վերականգնել իր կորուստները և փշրուած յոյսերը:*

*Երզնկայի առումը այս շաբաթուայ ամենալաւ լուրն էր, որ ցնծութեան մէջ ձգեց ամենքին և Կովկասի բոլոր քաղաքներում կատարուեցին մաղթանքներ և ուրախութեան ցոյցեր:*

*Ծովի վրայ թիւրքական միակ ռազմանաւերը—«Գէօբէն»*

*ու «Բրէսլաուն» դարձեալ երեւան են գալիս։ Հիւանդանոցային նաւերն ու անպաշտպան եզերքները ռմբակոծելու միայն ընդունակ, նրանք շարունակում են նման տմարդի արշաւանքները։ Անցեալ շաբաթ, օրինակ, «Բրէսլաուն» փորձել է Նովորոսիյսկի վրայ գնալ, սակայն հանդիպելով մեր ռազմանաւերին, արագ փախուստ է տուել՝ աշխատելով ծածկուել ծուխի վարագոյրի ետեւում։*

### ԱՐԵՒՄՏԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Ռիգայի կողմերում, յուլիսի 9-ին, նորից սկսուել են կռիւները՝ փոթորկային թնդանօթներով։ Թշնամին փորձել է ձեռք ձգել կորցրած դիրքերը, բայց ընկել է մեր կրակի տակ և ահագին կորուստներ ունեցել։ Իկսկիւլից մինչև Բալթիկ ծովը սկսել են բուռն յարձակումներ ռուս զօրքի կողմից։ Գերմանացոց առաջին ամրութիւնները գրաւուած են։ Թէև թշնամին ամեն տեղ յամառ դիմադրութիւն է ցոյց տալիս, բայց իզուր։*

*Միւս կողմից Աւստրօ-Գերմանական բանակի դրութիւնը, ինչպէս հաղորդում են Բուխարեստից, շատ ծանր է։ Սկսել է դասալքութեան և առհասարակ քայքայումը բանակի մէջ։ Աւստրիան անմիջական օգնութիւն է խնդրում Գերմանիայից, ապա թէ ոչ, յայտնում է որ իր անկումը մօտ է, որովհետև կորուստները անհաշիւ են։*

*Ռուսաց արևմտեան ճակատում, այս օրերս, ռուս զօրքը նահանջող թշնամուն հետապնդելու է ելել և սկսել է գերիներ ու ռազմամթերք ձեռք ձգել մեծ քանակով։ Յուլիսի 15-ին, օրինակ, գերի է առել 63 սպայ, 4,000 զինուոր, խլուած է 5 թնդանօթ, 6 գնդացիր, արկղներով ռումբեր և պատերազմական ուրիշ աւարներ։*

*Ռուսաց երկու ճակատներումն էլ ուրեմն յաջողութիւնները յաճախակի են դառնում և թշնամին ընկրկելով ետ է նահանջում մեծ կորուստներով։*

### ԱՆԳԼՈ-ՖՐԱՆՍԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Մեծ յաջողութիւններ են ձեռք բերում այս ճակատում, Սոմ գետի եզերքների վրայ ֆրանսացիք մի կողմից են ետ մղում ու ջարդում թշնամուն, անգլիացիներն էլ, չը նայելով կատաղի դիմադրութեան—միւս կողմից։ Ֆրանսացիների կողմում շարունակւում են կատաղի, անչափ կատաղի կռիւներ, որոնք տխուր վախճան են ունենում թշնամիների համար։ Գերմանացիները դեռ ևս չեն ուզում ձեռք քաշել մեր դաշնակիցներին Պերրոնի շրջանից դուրս նետելու մտքից և նորից սկսել են խոշոր յարձակումներ նաև Անգլիական ճակատի դէմ։ Անգլիացիներն էլ իրենց կողմից սկսել են յարձակումներ։ Մեծ ճակատամարտները ուրեմն ծայր են առնում Մեզերի և Զիլմոնի ամբողջ 7 վերստ տարածութեան վրայ։*

### ԻՏԱԼԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Ուժեղ գրոհներով իտալացիները, յուլիսի 13-ի հաղորդագրութեան համաձայն, գրաւել է Մոնթէ-Չէմոնէի և Ազիագոյի բարձունքները, ապա, չը նայելով յամառ դիմադրութիւններին՝ գրաւել են ուրիշ կարևոր բարձունքներ և առաջանում են՝ թշնամուն ետ սեղմելով։*

---

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ

*Բարձրագոյն հրովարտակով, համաձայն իր խնդրագրի՝ արձակուել է պաշտօնից արտաքին գործերի Նախարար Սազոնովը։*

*Բարձրագոյն հրովարտակով արտաքին գործերի նախարար է նշանակւում Շտիւրմէրը, մնալով նաև Նախարարապետ։*

*Պետական Խորհրդի անդամ և արդարադատութեան նախարար Խվօստովը նշանակւում է ներքին գործոց նախարար։*

*Պետական Խորհրդի անդամ Մակարովը նշանակւում է արդարադատութեան նախարար։*

—

*Ներքին գործոց նախարարութեան պաշտօնին Խվօստովի նշանակելու հետ՝ Նախարարապետ Շտիւրմէրը ստացել է նոր լայն իրաւասութիւններ՝ ընդհանուր քաղաքական բնոյթով։ Նրան է թողնուած բոլոր վարչութիւնների ղեկավարութիւնը։ Ներքին գործերի նախարարի օգնական կոմս Բոբրինսկիյ հրաժարուել է իր պաշտօնից։*

—

*Ներքին գործոց նախարարի առաջարկով՝ կառավարութիւնը որոշել է երկու միլիոնի չափ գումար բաց թողնել՝ ընդծովեայ հեռագրական գիծ հաստատելու համար Բագուից մինչև Կրասնովոդսկ (Անդրկասպեան երկիր)։ Արդէն գործը սկսուած է։ Այդ գիծը Թիւրքեստանը կը կապի Եւրոպական Ռուսիոյ հետ։*

—

*Հնարաւոր է համարուած նոր զօրակոչից ազատ պահել մինչև 1917 յուլիս 1-ը համալսարաններում կրտսեր դասախօսներին։*

—

*Նախարարութեան ծրագրով թէյի վաճառքը այսուհետև ենթարկուելու է նոր տուրքի, այսպիսի ձևով.—2 ռուբլիանոց սև թէյը 20 կ., 2—2,40—24 կ., 2 ռ. 40 կ.—2 ռ. 80 կ.։*

—

*«Ռուս. Սլովօ» թերթը հաղորդում է, որ Պետրոգրադում ձերբակալուած են՝ Ռուս-ֆրանսական բանկի կառավարիչ Դմիտրիյ Ռուբինշէյն և նրա եղբայրները, յետոյ՝ սպանեական փոխհիւպատոս Վոլֆսոնը, հրապարակագիր Ստէմբօ և եղբարք Իւնկէրներ,—բանկի տեսուչները։ Սրանք ամենքն էլ ամբաստանւում են, որ իջեցրել են ռուսական արժէքները։ Յետոյ՝ ձերբակալուած են՝ շաքարի ընկերութեան կազմակերպող Լազար Բրոդսկիյ, Կիևի շաքարի գործարանատէր Բաբուշկին և «Տրէուգոլնիկի» կառավարիչ Ուտեման, որոնք ամբաստանւում են չարամիտ շահագործութիւնների համար։ Մոսկուայումն էլ տեղի են ունեցել խուզարկութիւններ այդ ուղղութեամբ։*

### ՉՈՐՍ ՕՐ ՆԱԽԱԿԱՏԻՔ

*Ծրագրուած է և շուտով ամբողջ Ռուսաստանում պիտի գործադրուի շաբաթը չորս օր միս ծախելը արգելուելու օրէնք։ Միս չի մորթուելու և չի ծախուելու երեքշաբթի, չորեքշաբթի, հինգշաբթի և ուրբաթ օրերը։*

### ՆՈՐ ԶՕՐԱԿՈՉԸ ՅԵՏԱՁԳՈՒԱԾ

*Թագաւոր Կայսրը բարեհաճել է յուլիս 4-ի անուանական հրամանով նշանակած I և II կարգի երկրապահներին զինուորական ծառայութեան կոչելու ժամանակը յուլիս 15-ից յետաձգել մի ամսով—մինչև օգոստոսի 15 ը*

—

*Հաւաստի աղբիւրներից հաղորդւում է, որ Սազոնովի հրաժարականի պատճառը եղել է լեհական հարցում Շտիւրմէրի հետ տարակարծիք լինելը։*

—

*Շտիւրմէրը յայտնել է դաշնակիցների դեսպաններին, որ նախարարական փոփոխութիւնները ոչ մի փոփոխութիւն առաջ չեն բերել արտաքին քաղաքականութեան մէջ։ Այդ մասին կը յայտարարուի կառավարչական յատուկ զեկուցման մէջ ևս։*

—

*Ամերիկայից մէկ միլիոն զոյգ սպասուող կօշիկները կը հասնեն 3—4 ամսից յետոյ։ Պատուէրները տրուել են գործարանատէրերի կողմից և որոշուած է ծախել նոյն իսկ սակագնից ցած գներով։*

—

*Լուցկու համար մտադրութիւն կայ սակագին նշանակել՝ փաթեթը* (пачка *տասը տուփ) 18—22 կոպէկ, այլև հեռաւորութեան համեմատ՝ վրան աւելացրած ճանապարհածախսը։ Տեղական իշխանութիւնները պիտի որոշեն սակագնի փոփոխութիւնները՝ ճանապարհի ծախսի համաձայն։ Այս աշնան պետական գործարան է բացուելու Ուրալում, որ և պիտի կանոնաւորի լուցկու վաճառումը շուկաներում։*

Վիճակագրական տեղեկութիւններ Ալաշկերտի շրջանի մի քանի հայաբնակ գիւղերի մասին, հաւաքուած 1915 թ. մարտին Քաղաքացիական խմբի անդամների ձեռքով, լիազօր Ս. Տիգրանեանի յանձնարարութեամբ։

| Գիւղի անունը | Տուն | Տղամարդ | Կնիկ | Ցանուած 1912—1913 Աշնանը | | | Ցանուած 1913—1914 Աշնանը | | | Ցանուած 1914 Աշնանը | Ընդհանուր վարս հողը | Ընդհանուր ցանած վարս հողը | Ընդհանուր հողը | Պատերազմից առաջ | | 1915 թ. մարտին | | Ձի | Ոչխար | Կովեր | Այծ (եղած) | Մեղուի խոտհարք |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | | Աշնանը | Գարնանը | | Աշնանը | Գարնանը | | | | | | | | | | | | | | |
| | | | | Ցորեն | Ցորեն | Գարի | Ցորեն | Ցորեն | Գարի | Ցորեն | | | | Գոմէշ | Եզ | Գոմէշ | Եզ | | | | | |
| Ենիթափայ | 135 | 475 | 480 | 690 | 956 | 270 | 507 | 1028 | 279 | 64 | 1023 | 96 | 765 | 189 | 444 | 32 | 118 | 6 | 1672 | 54 | 139 | 424 |
| [illegible]իզու գիւղ | 63 | 276 | 405 | 432 | 852 | 163 | 377 | 969 | 168 | 19 | 674 | 95 | 471 | 58 | 385 | 6 | 89 | — | 2049 | — | - | 217 |
| [illegible]այրեկ | 55 | 223 | 208 | 405 | 616 | 210 | 274 | 621 | 214 | 24 | 638 | 146 | 341 | 42 | 250 | 2 | 77 | 9 | 1335 | 83 | 213 | 318 |
| Խաչլու | 98 | 311 | 364 | 530 | 662 | 143 | 576 | 671 | 141 | 14 | 730 | 28 | 374 | 16 | 628 | 4 | 110 | — | 1576 | 236 | 738 | 305 |
| Զիկանի | 79 | 313 | 299 | 487 | 525 | 284 | 469 | 526 | 234 | 24 | 762 | — | 482 | 76 | 365 | 5 | 122 | — | 1753 | 166 | 552 | 233 |

Միրիբայ չկայ այս գիւղերում։

Ծանօթութիւն. Հողի և հացահատիկի չափը սոմարով է նշանակուած։

Վիճակագրական տեղեկութիւններ Ղարաքիլիսայի (Ալաշկերտ) շրջանի մի քանի հայաբնակ գիւղերի մասին, հաւաքուած 1915 թ. մարտին Քաղաքացիական խմբի անդամների ձեռքով, լիազօր Ս. Տիգրանեանի յանձնարարութեամբ։

| Գիւղի անուններ | Տուն | Տղամարդ | Կնիկ | Աշնանացան (վարսուն) | Վարած 1914 թ. (վարսուն) | Սերմացու (սոմար) | | Լծկան | | Ձիեր | Գութան |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | | | | Ցորեն | Գարի | Եզ | Գոմէշ | | |
| Եոնջալու | 118 | 489 | 407 | $36^1/_2$ | 948 | 74 | 15 | 40 | 96 | — | — |
| Ձիրո | 26 | 117 | 95 | — | 250 | 8 | — | 6 | 26 | — | 3 |
| Քոփգուան | 20 | 93 | 83 | 3 | 110 | 82 | — | 9 | 14 | 17 | 5 |
| Մանգասար | 80 | 351 | 393 | 18 | $940^1/_2$ | 133 | — | 39 | 148 | 2 | — |
| Մագրա | 62 | 188 | 212 | 10 | $311^1/_2$ | 75 | — | 3 | 59 | 5 | 2 |
| Խրդր | 11 | 55 | 46 | 4 | 184 | 100 | — | 5 | 14 | 26 | — |

Կազմեց Հ. Զոլախեան

## ԲԵՐՔԻ ԲԱՇԽՄԱՆ ՍՈՎՈՐՈՅԹԻ ԿԱՆՈՆԸ ԱԼԱՇԿԵՐՏՈՒՄ.

Հողատիրոջը պատկանում է բերքի $^1/_{10}$-ը, հողի և սերմի տիրոջը—$^1/_2$-ը, հողի, սերմի և լծկանի տիրոջը—$^2/_3$, աշխատողին—$^1/_3$։

Սերմի բաժինն է ուրեմն $^1/_2—^1/_{10}=^2/_5$, լծկանի բաժինն է $^2/_3—(^1/_{10}+^4/_{10})=^1/_6$. Բերքը արդիւնք է այդ չորս գործօնների՝ աշխատող մարդու ($^1/_3$), հողի (հողատիրոջը $^1/_{10}$), սերմացուի (որա տիրոջը $^2/_5$) և լծկանի (որա տիրոջը $^1/_6$)։ ($^1/_3+^1/_{10}+^2/_5+^1/_6=1$)։

Հետաքրքրական է այդ առանձին գործօնների կարեւորութեան և գնահատման արտայայտութիւնը բաժինների համեմատութեան մէջ—ամենակարեւորը սերմացուն է ($^{12}/_{30}$), ապա աշխատող ձեռքն է ($^{10}/_{30}$) ու լծկանը ($^5/_{30}$), ամենաարժանը հողն է ($^3/_{30}$)։

Ուրիշ շրջաններում կան և ուրիշ կանոններ։

Սկայ

# ԳԱՒԱՌ

ՇՐՎԻՆԱՆՑ գիւղի «Գ. Տէր-Մարգարեանի» երկսեռ երկդասեան դպրոցի այս տարուայ ուղարկուած տեղեկագրից երեւում է, որ այդ դպրոցը բացուած է Գ. Տէր Մարգարեանի նպաստով, որ Կ. Հ. Բ. Ը-թեան միջոցով ամեն տարի վճարում է 2500 ռ.։ Գիւղի այդ դպրոցն են յաճախում շրջակայ 7—8 գիւղերի հայ մանուկները։ Կան նաև 6 թուրք աշակերտ։ Ուսուցչակազմը բաղկացած է 5 անձից. աւագ ուսուցիչն է Գ. Տէր-Մինասեան։ Գ. Տէր-Գասպարեանը ի նկատի ունենալով այս տարուայ թանգութիւնը, ինքնաբերաբար ուսուցիչների ռոճիկները աւելացրել է մի նոր նպաստով։ Դպրոցի մէջ սովորում են՝ 104 տղայ և 28 աղջիկ, ընդամենը 132 հոգի։

—

ԱԽԱԼՑԽԱ, յուլիսի 3-ին։—Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղի որբանոցը սկսում է քիչ-քիչ կանոնաւորուել։ Որբախնամ Մասնախումբը բաւական եռանդուն հսկում է և արդէն պատրաստել է տուել նոր շորեր, ոտնամաններ և այլն։ Որբանոցի ծառայողների կազմը 10 հոգի պատրաստ է։ Որբանոցի կառավարչուհի է հրաւիրուած վարժուհի տիկ. Ե. Կազմարարեանը։ Որբերից մեծերի մի մասը արհեստաւորների մօտ արհեստ են սովորում, իսկ որոշ ժամերին ազատ են լինում գրել-կարդալ սովորելու։

Հրաւիրուած է վարժուհի օր. Իւղ. Մնացականեանը, որը այս երկու ամիսը պարապելու է նոցա հետ մինչև ծխական-եկեղեց. դպրոցների բացումը։ Մինչև հիմա էլ որբանոցը դեռ ուսումնարանի շինութեան մէջ է և Մասնախումբը հոգս է քաշում իւր համար առանձին բնակարան գտնելու։

—Կիրակի, յունիսի 26-ին, ս. Փրկիչ եկ. պատարագից յետոյ տեղի ունեցաւ հանգուցեալ Քեռու կամաւորական IV խմբի յայտնի մարտիկ տեղացի Օննիկի (Յովհաննէս Գուլգուլեանի) հոգեհանգիստը, որը Քեռու հետ միասին հերոսաբար ընկել է Ռևանդուզի պատերազմի դաշտում։ Հանգուցեալի հօրեղբայր Յար. Գուլգուլեանը ի յիշատակ Օննիկի՝ 25 ռ. նուիրեց որբանոցին, 25 ռ. Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղին, 25 ռ. հայ փախստականներին և 25 ռ. էլ պատերազմում վիրաւորուածներին։

Թ.

—

Մ. ՂԱՐԱՔԻԼԻՍԱ.— Շաբաթ, յուլիսի 2-ին, երաժշտագէտ Արմէն Տիգրանեանը առաջին անգամ այստեղ բեմ հանեց Յով. Թումանեանի «Անուշ» քերթուածից վերածուած թատերգը (օպերան) իր հեղինակութիւնը, որ շատ մեծ յաջողութիւն ունեցաւ։ Դահլիճը լէփ լեցուն էր, չնայած մի օր առաջ դրուել էր «Արշին մալ ալան»-ը։ Թւում է, եթէ մեր երաժշտագէտները հետևեն Արմ. Տիգրանեանի բարի օրինակին, «Արշին մալ ալան»-ները ոչ միայն չեն ունենալ այն յաջողութիւնը, որ ունեն ներկայումս, այլ և մուտ չեն ունենալ հայ բեմը։ Չէ՞ որ մենք ունենք բաւական պատրաստուած հմուտ երաժիշտներ, որոնք իրազեկ լինելով երաժշտութեան կարող են հայ գեղարուեստը ազատել այլասերուելուց։ Մենք ունենք երաժշտական ընկերութիւն, որի վրայ պարտք է ընկնում լրջօրէն մտածել այդ ուղղութեամբ։ Մեզ անհրաժեշտ են նախ՝ օրկեստր և երկրորդ առայժմ գոնէ ինքնուրոյն և թարգմանական թատերգեր (օպերաներ), օր. հրաշալի կը լինի եթէ Միրաքեանի «Լարուարի որսը» վերածուի թատերգութեան (օպերայի)։

Արմէն Տիգրանեանի գաւառները շրջելը արժանի է գովասանքի, որովհետև գաւառը ևս զգում է թատերգի (օպերայի) ծարաւը, իսկ երբ ծարաւ մարդուն մաքուր աղբիւրի ջուր չեն տալիս, նա ստիպուած է լինում խմել նաև պղտոր ջուր, ինչպէս «Արշ. մալ ալան»։

Անուշի խաղը (պարտիան) երգում էր օր. Սիրանոյշը, որը ամենայն յաջողութեամբ տարաւ իր դժուարին գործը։ Նրա փափուկ ձայնը և գեղեցիկ բեմական արտաքինը աւելի ևս նպաստում էին լաւ Անուշ լինելու։ Օրիորդը անպայման ապագայ ունի։ Լաւ էին նաև պ. պ. Մինասեան (Սարօ), Դևոյեան (Մոսի), օր. Խանզադեան (մայր)։

Սուրէն Սիսակեան

—

ՕԼԹԻ, 3 յուլիսի.— Ներկայ ռուս-թրքական պատերազմում Օլթին իր շրջակայքով 18 օր թուրքերի ձեռքն է մնում. այժմ աչքի է ընկնում թուրք խուժանի թողած աւերածութիւնների հետքերը, ինչպէս Օլթի աւանի հրոյ ճարակ դարձրած շէնքերի, այնպէս և հայ գիւղերի, կիսաւեր եկեղեցիների, կոտորած պտղատու պարտէզների ծառերի, երկրագործ գիւղացիների։ Զոհերի թիւը բարեբաղդաբար այս շրջանում քիչ է եղել։ Մի հայ գիւղ, որ հաղորդակցութիւնից զրկուած է լինում, նաև շրջապատուած անտառներով, թրքական ու քրդական գիւղերով, անկարող է լինում միւս գիւղերի նման հասնել ռուս զօրքին. պաշարւում է և բնակիչները ենթարկւում են նախ կողոպտման, յետոյ ասկեարների ոճրագործութեան։ Այդ գիւղի երիտասարդ քահանային հեռացնում են իր ընտանիքից և ծեծ ու չարչարանքներ տալով՝ դարձնում է ծաղրի առարկայ. մերկացնում են նրան և սկսում են սրով ծեծել։ Երբ շատ է աղաչում նրանց և խոստումներ է անում, ասկեարներից մէկը քահանային թլպատում է, յետոյ մահապարտի պէս բերում են մի քրդի գիւղ, ուր բարեբաղդաբար քրդերը ծանօթ լինելով՝ ազատում են քահանային ու երեց-կնոջը բարբարոսների ճիրաններից։ Այդ գիւղը 16 օր ենթակայ է լինում թուրքերի հրամաններին ու պահանջներին, մինչև որ սերբերի քաջերի կօզակները սրարշաւ մտնում են գիւղը և թշնամուն սրախողխող անում։

Օլթու մէջ պատահել է, որ վաճառել են հայ եկեղեցիներից կողոպտած գրքերից, թանգարժէք հոգևոր պարգաններից և սրբազան անօթներից։ Անցեալ օրերը մի թուրքի ձեռքում տողերիս գրողը բռնեց եկեղեցական մի սեղանի մետաքսեայ ասեղնագործ մեծ ծածկոց. ձերբակալուած թուրքը տեղի պրիստաւի մօտ յայտնեց իր ախալցխացի լինելը։ Բռնուեց նաև եկեղեցական զգեստներից մի թանգարժէք գօտի երեք ականի, մաքուր հին արծաթ, ոսկէ ջրած 1 և $^{1}/_{2}$ գրուանքայ ծանրութեամբ, որոնք այժմ դրուած են Օլթուայ հայոց եկեղեցում։

Օլթի շատ անգամ խմբերով գալիս են նոր ազատուած հայերից կանայք ու որբ երեխաներ Սպերի և Բաբերդի շրջաններից։ Եկող որբերի մասին մտածող և կարգադրողն է պ. Ստեփան Տէր Մարգարեանցը, որին ջերմ աջակցութիւն է ցոյց տալիս Օլթու պրիստաւ պ. Հայկը։

Սարգիս քահ. Խալաթեան

—

ՉԽԱՐ, 8 յուլիսի.— Չխարի Հայոց եկեղ.-ծխական երկդասեան դպրոցի հոգաբարձութիւնը, որ վաղուց իրա համար նպատակ էր դրել տեղական հայ վրախօս մանուկ սերունդը մայրենի լեզուով կրթելու՝ գոնեա սրանց իսկական հայ պատրաստելու համար՝ լիակատար երկդասեան ծխակ. դպրոց ունենալ, այս տարուանից իսկապէս հասնում է իւր նպատակին։ Նախ մասնաւոր հեռագրով, ապա և «Համբաւաբերի» միջոցաւ հոգաբարձութիւնը սրտի բերկրանօք իմացաւ, որ պ. Տ. Աֆրիկեանը սեպտեմբերից 300 ռ. նպաստ է նշանակում Չխարի ծխական դպրոցին։

Հոգաբարձութիւնս Ձեր թերթի միջոցաւ ի սրտէ խորին շնորհակալութիւն յայտնելով պ. Տ. Աֆրիկեանին, ընդ սմին ծանուցանում է և իւր որոշումը. Դպրոցի յառաջադիմութիւնն աւելի ևս ապահովելու համար, այդ 300 ռուբլուն աւելացնելով ևս մի գումար, հրաւիրել թեմականաւարտ մի ուսուցիչ և այդպիսով ներկայ ուսուցչական խումբը մեծացնելով՝ հնարաւորութիւն ունենալ միացեալ բաժանմունքները առանձնացնելու։

Փօղոս Կաճկաճեանց

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ
### ԽՈՐՀՐԴԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը յարգելով Ալէքսանդրապոլի յաջորդ բարձր. Արտակ վարդ-ի խնդիրը և ի նկատի ունենալով այդ շրջանի դպրոցական կարիքը, որոշել է բացի նախկին դպրոցներին նշանակուած նպաստներից տալ եւս 600 ռ. նպաստ 100-ական ռուբլի՝ Սպիտակ, Աղքիլիսա, Մեծ Պարնի, Գեօրան, Ներքին և Վերին Ղանլիջաներ և Ղալթախչի գիւղերին։

***

Համաձայն միջնորդութեան Բադա գիւղի ծխատէր Մեսրոպ քհն. Ստեփաննոսեանի, որը խոստանում է իւր սեփական շինութիւնը ձրիաբար յատկացնել դպրոցին, Խորհուրդը որոշեց իւր կողմից տալ նպաստ 200 ռ. մի տարի ժամանակով։

***

Հ. Կ. Կոմիտէի և Կ. Հ. Բ. Ը-թեան Նախագահ պ. Ս. Յարութինեանը ի նկատի ունենալով I և II կարգի երկրապահների այս յուլիսի 15-ին զինուորակոչութեան կանչուելը՝ Խորհրդի որոշմամբ դիմել է փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանին՝ միջնորդութիւն յարուցանելու Փոխարքայի առաջ, որպէսզի զինուորական ծառայութիւնից ազատուին Կոմիտէի և Պարենաւորման այն ծառայողները, որոնք ենթարկւում են այդ զօրաժողովին։

Միջնորդութիւնը յարուցւում է այն հիմունքի վրայ, որ ինչպէս մի քանի հիմնարկութիւնների ծառայողներ, որոնք զօրքի թիկունքում գործում են զօրքի պաշտպանութեան համար, այնպէս և Կոմիտէի և Պարենաւորման ծառայողներին պէտք է դասել որպէս թիկունքում գործողների, որովհետև նրանք հոգում են տասնեակ հազարաւոր փախստականների կարիքները։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը ստացել է Կարմիր Խաչի Ընկ-ից հիւանդանոցի անցած մայիս ամսուայ ծախքը 2,129 ռ. 90 կոպ.։

***

### Ճ Ի Ւ Ղ Ե Ր

Ախալցխայի Կ. Հ. Բ. Ը-թեան տեղական ճիւղի Որբախնամ Մասնախումբը, որբերի օգտին արել է հետեւեալ նուէրները.

1. Կար. Բայբուրդցեանից մի սաժէն վառելափայտ.
2. Գր. Մութաֆեանից մի ոչխար.
3. Տիկ. Շող. Բազոյեանից՝ հագուստներ և ճոթ.
4. Տիկ. Զ. Հայրապետեանից՝ շորեր և գուլպայ.
5. Սեդ. Յակոբեանից շատ ընթերցանութեան գրքեր.
6. Յովհ. Պօղոսեանից՝ 2 ռ.
7. Գ. Յարութիւնեանից՝ 3 ռ.
8. Վ. Վիրաբեանից մի պուդ շաքարաւազ, և այլն և այլն, որի մասին մասնախումբս յայտնում է նուիրատու տիկիններին և պարոններին իւր շնորհակալութիւնը։

Մասնախմբի նախագահ՝ Խ. Թէքմիշճեան

***

### Հ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ՅՈՒԼԻՍԻ 9-Ի ՆԻՍՏԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ.

Կոմիտէի գլխաւոր լիազօր Ալ. Շարաֆեանը իւր զեկուցումով ընդգծեց բեռնակիր փոխադրութեան անհրաժեշտութիւնը Խնուս-Մուշ գծի վրայ։

Նախագահը շեշտեց, որ առհասարակ պէտք է ուժեղացնել Իգդիր-Խնուս-Մուշ գծով հաց փոխադրելու միջոցները, որպէսզի վերադարձուած գաղթականները քաղցի պատճառով նորից չգաղթեն Կովկաս։

Միւս կողմից՝ գնելով փոխադրած ապրանքների գների վրայ Խնուս-Մուշ գծի փոխադրութեան ծախքերը—գները կը թանգանան և ծանրապէս կանդրադառնան երկրում բնակուած գաղթականների վիճակի վրայ։ Կոմիտէն պէտք է հոգայ այդ մասին։

Պարենաւորման բաժանմունքը խնդրում է Կոմիտէից ընդունել յիշեալ գծի վրայ աշխատող 26 սայլի փոխադրութեան ծախքերը։

Որոշուեց.

1) Պահել բեռնակիր փոխադրութիւն՝ բաղկացած 13 ջորուց։

2) Յատկացնել 26 սայլի 3 ամսուայ ծախքերը ծածկելու համար Կոմիտէի միջոցներից 12,000 ռ.

3) Ընդունել Կոմիտէի միւս որբանոցների թւում և Մուշի որբանոցը, տեղափոխելով Կովկաս՝ որբանոցի կազմից աւել տեղաւորած որբերին.

4) Մտցնել Ալաշկերտի որբանոցը դասաւանդութիւնից ձեռագործ և այլ արհեստներ։

5) Կազմել մի վերստուգիչ մարմին (Контроль) Կոմիտէի և նրա բոլոր ճիւղերի գործունէութիւնը քննելու համար, ղեկավարութեամբ պ. Ս. Ալիխանեանի։ Վերջինիս յանձնարուեց կազմել վերստուգութեան կազմակերպման նախագիծը, հիմնուելով նաև Վ. Մամուլեանի այդ հարցը արծարծող նախագծի վրայ։

***

Խորհուրդը նուիրել է Աստրախանի Հ. Կոմիտէի որբանոցին Անահիտեան գրադարաններից մէկը՝ բաղկացած 100 հայերէն գրքերից։

***

Սամարղանդի Կոմիտէից Ե. Երամիշեանի միջոցաւ ստացուած է շնորհակալութեամբ 150 ռ. գաղթական որբերի կարիքների համար։

***

Հ. Կեդր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է Թէոդոսիայի Հայ Կանանց յանձնաժողովից յօգուտ նրանց անունով պահուող որբերի 300 ռ.

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ
### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Ե ա ղ ա ն—Պետոյից*

Հետս բերում եմ 84 որբ։ Տեղեկացրէք Հայ Օրիորդաց կոմիտէին՝ ուղարկեն իրենց ներկայացուցիչները 40 որբ ընդունելու, իսկ մնացեալ 44 հոգու համար կարգադրեցէք։

---

*Ե ր և ա ն—Տէր Մարտիրոսեանից*

Հաւաքել ենք Ախտից ոչ հեռու Ջրաղացներ գիւղում մի որբանոց 130 երեխայի համար։ Սպասում ենք որբերի գալուն։ Խնդրում եմ խօսեցէք Խորէն եպիսկոպոսի հետ և արէք հարկաւոր կարգադրութիւնը։

---

*Ղ ա ր ա ք ի լ ի ս ա (Ալաշկերտ)—Փարաջանեանից*

Բժիշկ Օհանեանի հետ միասին ճանապարհուեցինք Երևան։ Մեզ հետ տանում ենք Ալաշկերտի որբանոցից 150 որբ Երևանում տեղաւորելու համար։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը գնել է մէկ միլիոն տուփ լուցկի, որը համաձայն Թիֆլիսի Առևտրական բանկի տուած տեղեկութեան՝ արդէն ստացուած է Բաքւում և պահւում է յիշեալ բանկի պահեստներում ընկերութեանս տրամադրութեան տակ։

Գնուած է այնուհետև 8 վագոն աղ, որը ուղարկուած է հետեւեալ վայրերը. Աղստաֆա 1 վագոն, որտեղից, ըստ Ընկերութեանս կարգադրութեան ուղարկուած է Բարվանսար՝ 200

պուդ, Դիլիջան՝ 200, Ելենովկա՝ 600, Ալէքսանդրապոլ՝ 1 վագոն, Ղանձակ՝ 1, Իգդիր՝ 1, Մեծ-Ղարաքիլիսա՝ 1 վագոն, Երեւան՝ 2 և Վաղարշապատ՝ 1 վագոն։

Եղբ. Բաւենցեաններից գնուած է 1,500 պ. սապոն, որից ստացուած է 72 պ. 20 ֆտ. և ուղարկուած է Մեծ-Ղարաքիլիսա 200 պ., Սարիղամիշ՝ 250, մնացեալն Ալէքսանդրապոլ։ Տոլէյից գնուած է 189 պ. 9 ֆ. սապոն. Իգդիր ուղարկուած է 79 պ. 9 ֆ., Վաղարշապատ 50 պ., Քարվանսարա՝ 30 պ. և Դիլիջան՝ 30 պ.։

Գնուած է 36 հազար փունտ թէյ. մօտ օրերումս ուղարկուելու է գոյութիւն ունեցող պահեստներին ըստ գաղթականների քանակի։

# Ամենայն Հայոց Կաթող. Թիֆլիսում

Ամենայն Հայոց Վեհ. Կաթողիկոսը շոգերի պատճառով գընալու է Օրթաճալայում գտնուող Մանթաշեանի այգին։

Յուլիսի 9-ի երեկոյեան Վեհ. Կաթողիկոսին ներկայացան Ազգ. Բիւրոյի անդամները։ Բիւրոյի փոխ-նախագահ պ. Յ. Սպենդիարեան զեկուցում տուեց Ազգ. Բիւրոյի գործունէութեան մասին և ներկայացրեց գրաւոր տեղեկագիր և հաշուեկշիռ։ Կարգադրիչ անդամներից մէկը տեղեկութիւններ հաղորդեց հայ կամաւորական գնդերի գործունէութեան վերջին շրջանի և նրանց ներկայ վիճակի մասին։

Կաթողիկոսը ուշադրութեամբ լսեց տրուած տեղեկութիւնները, հարցեր տուեց զանազան կէտերի մասին և, ի վերջոյ, յայտնեց, որ ինքը, ինչպէս ամեն ազգային հաստատութեան, միշտ հովանաւորել է և Ազգ. Բիւրոյին և այսուհետև էլ կը հովանաւորէ։ Իր մօտ եղած յատուկ գումարներից նա բաժին է հանել կամաւորներին. դեռ մի քանի օր առաջ փոխադրել է Ազգային Բիւրոյին 10,000 ռ. և դեռ էլի կուղարկէ, եթէ կարիք լինի։

Ապա տեղի ունեցաւ զրոյց և մտքերի փոխանակութիւն մի շարք հրատապ խնդիրների մասին։

ՆՈՐ ԶՕՐԱԿՈՉԻ ԱՌԹԻՒ

Ամեն. Հայոց Վեհափառ Կաթողիկոսը միջնորդութիւն է յարուցել Փոխարքայի մօտ դիմումներ անելու, որպէսզի նոր զօրակոչից ազատ կացուցանուեն հայ բոլոր դպրոցների այն ուսուցիչները, որոնք պատկանում են I և II կարգի ռազմիկների թւին։

Այս առիթով անհրաժեշտ է թեմական առաջնորդներից ստանալ այդպիսիների ցուցակը։ Տեղական թերթերի մէջ տպուած է հետևեալ յայտարարութիւնը.—

«Հայոց եկեղեցական դպրոցների մէջ պաշտօն վարող ԲՈԼՈՐ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԸ, որոնք ենթակայ են տալու յուլիս 15-ի ԶԻՆՈՒՈՐԱԿՈՉԻՆ, այսու հրաւիրւում են անմիջապէս տեղեկութիւններ հաղորդել իրենց ԹԵՄԱԿԱՆ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԻՆ՝ իրանց զինուորական կացութեան և դպրոցներում ծառայած տարիների մասին»։

Թւում է, թէ թեմական առաջնորդները արդէն պիտի ունենային և ամեն տարի պիտի կազմ և պատրաստ պահէին բոլոր հայ ուսուցիչների, նրանց զինուորական կացութեան և դպրոցներում ծառայած տարիների տեղեկագիրն ու ցանկը, որպէսզի այսպիսի ծանրակշիռ հանգամանքներում չըստիպուէին յայտարարութիւնների դիմելու։

Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսը իր շքախմբով և Կարգադրիչ Յանձնաժողովի անդամների հետ ամսիս 13-ին և 15-ին գնաց քաղաքի որբանոց-արհեստանոցները։

# Քրոնիկոն

Անցեալ շաբաթ մեռաւ ամբողջ Կովկասին յայտնի տպարանական գործիչ և ձուլիչ Գ. Մադէր, որ մեր երկրի առաջին ձուլարան հիմնողն է և կատարելագործել է տեղական լեզուների տառերի ձևերը։

***

«Համբաւաբերի» անցեալ համարի Քրոնիկոնի մէջ յայտնուած էր, որ իբր թէ յուլիսի 1-ին առաջնորդարանում ընտրուել է մի կենտրոնական մարմին փախստական որբերին օգնող հայ կազմակերպութիւններից։ Այդ լուրը, որ քաղուած էր թերթերից, ճիշտ չէ։ Իրողութիւնն այն է, որ եղել է մասնաւոր խորհրդակցութիւն այդ առիթով, բայց ոչ մի մարմին չի կազմուած։

***

Թիֆլիսի թերթերն եւ, Բագուի օրինակով, միջնորդութիւն են յարուցել նոր զինուորակոչութիւնից ազատ կացուցանելու թերթերի մէջ գործողներին և աշխատակիցներին։

***

Բագուի քաղաքագլուխը դիմել է Ալ. Խատիսեանին և հարցրել, թէ ինչ միջոցներ են ձեռք առնուած քաղաքային ծառայողներին առաջիկայ զօրակոչից ազատելու համար։ Թիֆլիսի քաղաքագլուխը պատասխանել է, որ ի նկատի առնելով մեր ապրած րոպէի լրջութիւնն ու արտակարգ կարիքը—արտօնութիւն պէտք է տալ միմիայն նրանց, որոնց աշխատանքին փոխարինող չի լինի։ Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը որոշել է մնացեալ աշխատողներով գործը վարել, իսկ մի քանիսին էլ փոխարինել կանանցով։

***

Խոլերայի դէպք է տեղի ունեցել Գորիում։ Այդտեղ մեռել է մի կին, որի աղիքները և ստամոքսը ուղարկուած է քննելու բժշկական մասում։ Քննութիւնը յայտնագործել է խոլերայի բացիլներ։ Ի նկատի ունենալով այդ հանգամանքը, քաղաքի առողջապահ. բժշկական մարմինը նիստերի է հաւաքւում՝ քաղաքի մաքրութեան և կենսամթերքի վրայ հսկողութիւնն աւելի խըստացնելու համար։

***

Թիֆլիսի նահանգապետը, լսելով որ սակաւին յայտարարելուց յետոյ ծախողներից մի քանիսը փորձ են անում թանգցնելու կենսամթերքները, մի յայտարարութիւնով խորհուրդ է տալիս ետ կենալ այդ վարմունքից, որովհետև ամեն ծախող, որը կը բռնուի այդպիսի գործի համար, առանց այլևայլութեան կաքսորուի և նրա գրպակը կամ խանութը կը փակուի։

Լսելով նոյնպէս որ ոստիկանութիւնը հարկաւոր չափով եռանդ գործ չի դնում չարիքի առաջն առնելու համար, նահանգապետը նախազգուշացնում է, որ խիստ պիտի լինի զանցառուների վերաբերութեամբ։

***

Թիֆլիսի նահանգապետը հրատարակել է հետևեալ կոչը.— «Ովքեր իրենց մօտ թալանած իրեր ունեն անցեալ անկարգութիւնների ժամանակից, պարտաւոր են՝ այս յայտարարութիւնը պատերին կպցնելուց յետոյ երկու օրուայ ընթացքում տանել ու յանձնել թալանը թաղային ոստիկանութեան։ Տնատէրերը և դըռնապանները պարտաւոր են միևնոյն ժամանակամիջոցում յայտնել իրենց թաղի ոստիկանութեան՝ տներում, բակերում և վարձով սենեակուորների պահած թալանի մասին։ Ով որ գիտէ այդ մասին և չի հաղորդում ուր հարկն է, մանաւանդ ում մօտ որ ոստիկանութիւնը կամ այլ իշխանութիւն երևան հանի թալանուած որևէ իր, խիստ պատժի կենթարկուի ըստ օրէնքի կամ կաքսորուի Կովկասի սահմաններից բարձր իշխանութեան կարգադրութեամբ։

***

Ռուս քաջարի զօրքի Երզնկայի գրաւման առթիւ ամսիս 13-ին քաղաքը զարդարուած էր դրօշակներով։

***

Երկուշաբթի, յուլիսի 11-ին կայացած Դումայի նիստում որոշուել է քաղաքային ծառայողների ռոճիկները աւելացնել տարեկան 192,000 ռուբլով. իսկ ելէքտրաքարշի ծառայողների ռոճիկները տարեկան 203,000 ռուբլով։

Այդ նիստին որոշուում է նաև ելէքտրաքարշի տոմսակների գներն աւելացնել։

***

Քաղաքային Վարչութիւնը քաղաքի ութ կէտերում հաստատում է բաց շուկաներ, որտեղ սակագնով վաճառուելու են գետնախնձոր, պամիդոր, կանաչեղէն և զանազան մրգեղէն։ Իւրաքանչիւր կէտում աշխատելու են 12 վաճառող կանայք։

# Արտաքին տեսութիւն

Գաճիրէից հեռագրում են, որ ըստ հաւաստի աղբիւրների Մէզինէի մօտ տեղի ունեցող արաբների կռուի մէջ, քաղաքի պահակ թիւրք զօրագունդը, թուով 2,500 հոգի, անձնատուր եղաւ արաբներին։ Խլուած է շատ ռազմամթերք։

—

Ինչպէս հաղորդում է «Ժ ու ր ն ա լ դ է Բ ա լ ք ա ն ը», Բուլգարիան այլևս թողնուած է իր գլխին և անօգնական։ Աւստրիոյ և Գերմանիոյ զօրքերը հեռացել են երկրից, իսկ Թիւրքիան Եւրոպայում 90,000-ից աւելի զօրք չունի, որի կէսը Դարդանէլի շրջանումն է գետեղուած, իսկ միւս կէսը Կ. Պոլսում։ Բուլգարներին մնում է պաշտպանուել առանց որևէ օգնութեան իր դաշնակիցների կողմից։ Եւ դա արդէն սարսափի մէջ է ձգել նրանց։

—

Բուխարեստից հեռագրում են, որ Կովկասեան ճակատի թիւրք ընդհանուր հրամանատարը պաշտօնանկ է արուած և դատարանի յանձնուած Կ. Պոլսում, որովհետև ստայօղ տեղեկութիւններ է հաղորդել։

—

Անգլիական եկեղեցիներում քարոզիչները անընդհատ յորդորում են ժողովրդին՝ լինել անտեսող և խնայող։

—

Ռումինական «Ո ւ ն ի վ ե ր ս ո ւ լ» թերթը մի յօդուած է տպել ռումանցիների բոնելիք դիրքի մասին, ուր ասուած է նաև հետևեալը.—«Ամեն ռումանցի, որի միտքը դեռ չի մթագնել գերմանական քարոզներով, ինքն իրեն հաշիւ պիտի տայ, որ Ռումանիոյ գործելու ժամը հասել է արդէն։ Մի քանի շաբաթ յետոյ ամբողջ Ռումանիոյ մէջ հնչելու է զօրակոչի ձայնը և մեր ազգային բանակը կը գնայ իր պարտքը կատարելու՝ երկրի սահմանները լայնացնելու գործում»։ «Ո ւ ն ի վ ե ր ս ո ւ լ ը» Բուխարեստի ազդեցիկ և կիսապաշտօնական թերթն է գրեթէ։

—

Յունիսի 5-ից մինչև յուլիս 5-ը թշնամին կորցրել է հետևեալ թուով միայն գերիներ՝ չը վիրաւորուած.—Ռուսաց ճակատի վրայ—232,300, իտալականի՝ 4,700, Անգլո-ֆրանսականի՝ 14,200, ընդամենը 251,200 հոգի. հաշուելով նաև նոյնքան, եթէ ոչ աւելի՝ վիրաւորներ և սպանուածներ, համարձակ կարելի է ասել, որ թշնամիները կորցրել են կ է ս մ ի լ ի ո ն անձ, այն է՝ 15 զօրաբանակ։

—

Բուխարեստից հաղորդում են, որ Սերբիայից աւստրիական զօրքերի մեծ մասը հեռացած լինելով, սերբ ազգաբնակութիւնը, օգտուելով փաղօրօք գետնի մէջ թաղած զէնքերից (սերբերի նահանջի օրերից), ոտքի են ելել և ապստամբութեան դրօշը պարզել։

—

Մեր արևմտեան ճակատում, միայն յունիսի 7-ին և 8-ին գերի են առնուած՝ 370 սպայ (1 զօրավար, 1 գնդապետ), 13,700 զինուոր և 10 թնդանօթ։ Ուրեմն ցարդ գերի են առնուած մինչև 27,000 անձ և 40 թնդանօթ։

—

Ինչպէս հաղորդում են թերթերը, Օսմանեան կառավարութիւնը համաձայնուել է ծախել Պաղեստինը սիոնական հրէաներին և թոյլ տալ կազմելու այնտեղ հրէական հասարակապետութիւն։ Մինչև խաղաղութիւն կնքելը հրէաները կունենան կուլտուրական և ազգային ինքնավարութիւն։ Վերջնական որոշումը կը թողնուի ապագայ խաղաղութեան համագումարին։ Բ. Դրան հետ բանակցութիւնների է մտել այդ մասին Կ. Պոլսի նախկին Հիւս. Ամերիկայի դեսպան Մորգէնտաու։

—

Բաղդադում յանկարծամահ է եղել Պարսկաստանում գերմանական զինուորական գործակալ Կոմս Վիլհամովից-Մելլէնդորֆ։

—

Աթէնքից հեռագրում են հաւաստի աղբիւրների միջոցով, որ Ալբանացիք լուրջ ապստամբութիւն են սկսել բուլգարների դէմ, որովհետև բուլգար կառավարութիւնը շատ վատ է վարւում ազգաբնակութեան հետ։

—

Բուխարեստում մեծ ցոյցեր են տեղի ունենում՝ Ռումինիայի դաշնակիցներին միանալու օգտին։

---

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ԳՐԱԿԱՆ ՈՒ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՅԵՐԵԿՈՅԹ Ի ՅԱՐԳԱՆՍ ՖՐԱՆՍԱՅԻ ԵՒ Ի ՆՇԱՆ ՀԱՅՈՑ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

Բարիզ, 22 յունիս 1916

Մեր տաղանդաւոր բանաստեղծ ու ազգային գործիչ պ. Ա. Չօպանեանը գեղեցիկ գաղափար յղացած էր Ֆրանսային իրեն արժանի մեծարանք ու երախտագիտական մի ցոյց փոխարինելու։

Շաբաթներ առաջ արդէն սկսած էր պատրաստութիւններն, իրեն գործակից ունենալով գաղութին արուեստագէտներն ու մտաւորականները։

Ոչ մէկ ջանք խնայուած էր Sorbonneի մեծ ցոյցին կարելի եղածին չափ փառաւոր պատասխան մը տալու համար։

Որոշուած օրէն առաջ արդէն Salle Caveauի գեղարուեստական մեծ սրահին բոլոր տեղերը վարձուած էին և կարգադիր մասնախումբը ցաւելով մերժում էր տոմսերու նոր խնդրանքները։

Կիրակի, 18 յունիս, ժամը 2էն առաջ արդէն սրահը լիքն էր։

Բեմը զարդարուած էր պ. Տիրան Ալեքսանեանի մեծ նուագախմբով. հայ օրիորդներ հայկական տարազներով սպասարկում էին հանդիսականներուն, իրենց ներկայացնելով պ. Էդգար Շահէնի մէկ գլուխ գործոց յայտագիրը, հայ գեղարուեստի մի նմոյշ, ինքնատիպ և շքեղ, զարդարուած հին ձեռագրերու զարդագրերով։

Ժամը ճիշտ 3ին սրահ մտաւ Ֆրանսայի Հանրապետութեան նախագահի յատուկ ներկայացուցիչը Lieutenant-colonel M. H. Bonel մեծ համազգեստով և նախարարապետ M. Briandի ներկայացուցիչ իր անձնական քարտուղարը M. Buret, որոնք մեծ պատիւներով ընդունուեցան և առաջնորդուեցան իրենց յատկացուած պատուոյ օթեակները, Ն. Վ. Պօղոս փաշա Նուպարի հետ։

Անմիջապէս սկսաւ նուագահանդէսը։ Պ. Ալեքսանեանի ճարտար ղեկավարութեամբ նուագախումբը մեզ հրամցրեց ֆրանսական երաժշտութեան սիրուն մի նմոյշ, Petite Suite de Claude Debussy։

Երկար ծափերէ վերջ բեմ եկաւ պ. Ա. Չոպանեան և մէկ ժամու չափ հմտալից և ազդու բանախօսութիւն արաւ ֆրանսերէն լեզուով։

Ցայտնեց նախ թէ հայ մտաւորականներու կազմած այս հանդիսաւոր ցոյցը պատասխանն էր Ֆրանսացւոց կողմէ Սորպոնի մէջ Հայոց նուիրուած համակրանքի ցոյցին և մի նշան էր ոչ միայն մտաւորականներու անձնական երախտագիտութեանը, այլ նաև ամբողջ հայ ցեղին երախտագիտութիւնն էր Ֆրանսայի մեծ ազգին և իր մշակոյթին (culture)։

Թուեց այն բոլոր մտաւորական և պատմական կապերը, որոնք Հայերը կը կապեն Ֆրանսայի հետ. յիշեց Խաչակրութեան ժամանակ Հայոց կապն ու դերը, ֆրանսական ցեղէ հայ թագաւորները և այլն։

Հպարտութեամբ մէջ բերաւ Ֆրանսայի միջամտութիւնը Հայոց ի նպաստ. մանաւանդ 1862ին Զէյթունի ազատուիլը։

Պ. Չոպանեանը երախտագիտութեամբ յիշեց Ճէպէլ Մուսայի վերջին դրուագը, 4,000 Հայերու ազատումը Ֆրանսացիների օգնութեամբ։ Վերջապէս 20 տարիէ ի վեր Ֆրանսայի մեծ մարդոց մեզ համար արածները։

Մասնաւորապէս յիշեց Սորպոնի մեծ հանդէսը և յետոյ գլխաւորապէս ծանրացաւ մտաւորական բարիքին վրայ, որ հայ ազգը ստացած է ֆրանսական մշակոյթէն և գլխաւոր կերպով ցոյց տուաւ Ֆրանսայի պատմութեան, գրականութեան և արուեստին ազդեցութեան չափն ու ձևը նոր ժամանակներու հայ ցեղի մտաւորական, բարոյական և ազգային վերածնութեան մէջ։

Պ. Չոպանեան յայտնեց իր ճառին մէջ թէ ինչ միտքով և ինչ ըմբռնումով կազմած է այս հանդէսի յայտագիրը. ուզած էր որ այնտեղ ֆրանսական և հայ արուեստի արտայայտութիւններ իրար գրկեն և ցոյց տրուի ֆրանսական հասարակութեան թէ ինչպէս հայ արուեստագէտները ըմբռնած են ֆրանսական արուեստը և զայն իւրացուցած, ու կարող են զայն արտայայտել և թէ ինչպէս ֆրանսական ճաշակը հայացուած էր հայ բանաստեղծութիւններու մէջ։ Իսկ ցոյց տալու համար հայ ինքնատիպ ոգին և արուեստը, ծրագրին մէջ լայն ու կարևոր տեղ տրուած էր հայ ժողովրդական և եկեղեցական երաժշտութեան, Քուչակի բանաստեղծութեան և Տիկ. Օհանեանի արուեստին, զոր պ. Չոպանեան ներկայացրեց իբրև հայ ազգայնութեան թանկագին արտայայտութիւնը։

Յետոյ վերջացնելու համար իր ճառը, պ. Չոպանեան ոտքի ելաւ և յուզուած բայց հանդիսաւորապէս յայտնեց հայ երախտագիտութիւնը մեծ Ֆրանսային։

Այստեղ բառ առ բառ դնում ենք իր խօսքերը.

«Ցաւով ծանրաբեռն, բայց միշտ կենդանի և ապագային վրայ վստահ, հայ միտքը այսօր, չեղջակոտոտած աւերակներու և դիակներու մէջէն կանգնում է և իր սուգի քօղերը յարդարելով իր մի քանի հոգեկան զարդերով, որ ոչ հուր և ոչ սուր կրնան քանդել, իր սիրոյ և երախտագիտութեան ողջոյնը ուղղում է իր բարերարուհւոյն, այն վեհաշուք ու մեծոգի թագուհւոյն որ ֆրանսական միտքն է, և խնդրում նորանից, որ հաճի ընդունիլ այս խոնարհ մեծարանքը, իւր բոլոր մաղթանքներու եւ իւր բոլոր օրհնութիւններու հետ, այն հերոսներու համար որ պայքարում են, որպէսզի Արդարութիւնն ու Գեղեցկութիւնը աշխարհին մէջ յաղթանակեն»։

Պ. Չոպանեանի ճառը մեծ տպաւորութիւն գործեց Ֆրանսացիներուն վրայ, որոնք անվերջ ծափահարութիւններով քանիցս բեմ հրաւիրեցին զինքը և իրենց համակրանքը արտայայտեցին։

Հետզհետէ բեմ եկան ֆրանսացի և հայ մեծ արուեստագէտներ, ինչպէս M-me Montjovet *(de l' Opéra)*

M. de Max *(de la Comédie Française)*

Mr. Maxudian, Sarah-Bernhardt թատրոնի նշանաւոր ողբերգակը (tragèdien), հայ ցեղի պարծանքը եղաւ. յուզուած և սակայն ոգևոր, իրեն յատուկ ձևերով արտասանեց Սիամանթօի Արիւնը և Հ. Տ. Սահակեանի Արարատը, ֆրանսերէն լեզուով։ Պ. Մաղսուտեան, որ ճարտարօրէն արտասանեց Victor Hugoի Hymne և Clovis Huguesի Le Drapeau։ Շատերը չէին հաւատար թէ այդ արտասանողը հայ էր։

M-me Delvairի և M-me Segond-Weber. պ. Ալեքսանեանի նուագախումբը գմայլելի կերպով նուագեց հայ շարականներէն

Ա՜մեն հայր սուրբ, միղեղի, Խորհուրդ խորին, Ո՜վ զարմանալի. ընկերակցութեամբ Opéraի միանուագողներէն Mr. Reyի և պ. Սիմոնեանի մեներգին։

Հայ արուեստագիտուհիներ, օր. Բաբայեան և օր. Դավանոզ, դաշնակի ձայնակցութեամբ երգեցին։

Պ. Սիմոնեան ևս երգեց Կռունկը։

Նուագահանդէսի մասին աւարտումէն յետոյ, յանկարծ սրահը ստացաւ խորհրդաւոր մթութիւն մը և քիչ յետոյ բեմը լուսաւորուեցաւ կարմիր լոյսերով և զարդարուեցաւ արևելեան գորգերով։ Անոր վրայ լռութիւնը խզուեցաւ և բեմին ներսէն սկսաւ լսուիլ Պարիզի հայ երգչախումբին կողմէ երգուած «քէլէր, ցոլէր իմ եարը», որու աւարտումէն վերջ յամրաքայլ բեմ եկաւ տաղանդաւոր պարուհին Տիկ. Արմէն Օհանեան և պարեց «Հոյ նազան իմ» պարերգը երգիչ խումբի ընկերակցութեամբ։ Կեցցէներ թնդացուցին սրահը։ «Կանչէ, կռունկ, կանչէ» և «Դարդս լացէք» խմբերգներու ընդմիջումէն վերջ, Տիկ. Օհանեան պարեց Հայոց սուգի ու ողբի պարը, նուագախումբի ընկերակցութեամբ։ Հայուհին սևերով պատուած, մերկացած իր զարդերէն և շղթաներով շքաւորուած, բեմ կուգայ և կարտայայտուի անխօս։

Հիացումը միակ տպաւորութիւնն էր ու յուզումի արցունքը՝ արդիւնքը։

Աւարտելու համար այս գեղեցիկ հանդէսը, բեմ եկաւ երկսեռ երգիչ խումբը 30 հայ օրիորդներէ և պատանիներէ բաղկացած և քառաձայն երգեց Կոմիտաս վարդապետի դաշնաւորած «Կուժն առայ» և «Զինարի եարը» երգերը, ինչպէս նաև Մ. Եկմալեանի դաշնաւորած քառաձայն Մեր Հայրենիքը, ձեռ Թըրթակցին առաջնորդութեամբը։

Դր. Լևոն Համբարձումեան

(Արմենիա, թիւ 48)։

## ՍՊԱՆՈՒԱԾ ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐ

Պարիզի «Ժուռնալ»-ի Թիւրքահայաստան ղրկած թղթակիցը ստոյգ տեղեկութիւններ ստացած է Հայ կաթոլիկ հասարակութեան մի քանի Առաջնորդների սպաննուած լինելու մասին։

Այս ցանկը թէև շատ թերի է, բայց աւելորդ չենք համարիր անոնց անունները յիշատակել այստեղ։ Արդէն ուրիշ անգամներ ալ այս մասին տեղեկութիւններ հրատարակուած են Արմէնիայի մէջ։

Խարբերդի հայ կաթոլիկների առաջնորդ Գեր. Իսրայէլեան սպաննուած է աքսորի ճանապարհին վրայ, Ուրֆայի և Տիարպէքիրի միջև, իր ժողովրդի մէկ մասին, քահանաներին և գթութեան քոյրերին հետ մէկտեղ։

Մալաթիայի առաջնորդ Գեր. Խաչատուրեան խեղդամահ եղած է։

Տիարպէքիրի առաջնորդ Գեր. Չէլէպեան սպաննուած է, թէև ճիշտ տեղեկութիւններ չկան թէ ուր և ինչպէս։

Մէրտինի առաջնորդ Գեր. Մալոյեան սպաննուած է իր ժողովրդի մէկ մասին հետ մէկտեղ։

# ԲԻԹԼԻՍԻ ՏԱՐԵԳԱՐՁԻՆ

## ԹՐՔԱԿԱՆ ԳԱԶԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ*)

### Ե

Մուշ համնելուց հինգ օր յետոյ ճեւտէթը ամբողջ Մշոյ դաշտի հարիւրէն աւելի հայ գիւղերը պաշարել տուաւ քիւրդ համիդիէներով, տխրահռչակ Մուսա և Ղասըմ բէկերի ղեկավարութեամբ։ Ճեւտէթը նախ հաւաքում է հոգևորականներին կոտորում և ապա ժողովուրդին։ Մուշի երկու թաղ ինքնապաշտպանութեան են դիմում և երեք օրից յետոյ թնդանօթների ռումբերի տակ քարուքանդ լինում։ Գազանութիւններն էլ ստեղծելուն համճար է հարկաւոր և այդ հանճարը մենաշնորհեալ է մահմեդականութեան միայն։ Յիշելու արժանի է Մուշի հայ կանանց տարօրինակ ինքնասպանութիւնները. խումբ-խումբ քաղաքի մի քանի կենտրոնները հաւաքուած, սանլուայի ջրով լեցուն տաշտի նման մի տաշտ թոյն մէջտեղ դրած, իւրաքանչիւրը մօտենում էր և մի գաւաթ փրկիչ-մահացու ըմպելին խմելով գնում էր հոգեվարքի մէջ նոր զոհեր և գալարումներ խառնելու իւր ընկերուհիների հանդիսներին ու գալարումներին։ Ողջ մնացողներին էլ Բիթլիսցոց նման ցուցադրելուց յետոյ տանում են Մուշից տաս վերստ հեռու Սոխ-Գոմ գիւղը և տների մէջ լեցնելով վառում։ Ռուս բանակի Մանազկերտի կողմի ընդհանուր հրամանատարն էր

Ա. Այստեղ ես տեսնում եմ որ Եարամիշի (Չէրքէզների գիւղ) ռուսաց հպատակութիւն ընդունած օսերը, արտօնագրերով ամէն օր խումբ-խումբ գալիս էին Մալազկերտ ու գնում, առըրճանակ և դաշոյն վրաններին։ Ամէն օր հեռախօսով հաղորդում էին ռուսների թոյլ կողմերը, որից յետոյ թուրքերը յարձակւում էին գործում, բայց մեղադրում էին, ով անիրաւութիւն, ազգովին ռուսների համար ողջակիզուող հայերին։ Այս անօրինակ դրպարութիւնը վերացնելու համար իմ կոտրտուած ռուսերէնով յուլիսի 1-ին երրորդ Զէրնամորեան գնդի թարգմանի և առաջնորդի պաշտօնը յանձն առայ։ Երեք օր յետոյ մենք տեղափոխուեցինք վերոյիշեալ Եարամիչ գիւղի քով Կարալի գիւղը։ Ամբողջ երկու ամիս էր որ հետևակների հետ և կոզակներն էին ապրում հենց այդ Կարալի և Եարամիչ գիւղերում, սակայն ոչինչ չէին կարողացել նկատել և օսերն իրենց դերը լաւ էին խաղում։ Մեր տեղափոխուելու երրորդ օրը ես իմացայ, որ հենց այդ «բարեկամ» օսերի տներում ապրում են օսական տարազով լրտես քիւրդեր։ Սոցանից Մահմէդ անունով քիւրդը երկու օր առաջ, վերցնելով Մալազկերտից բերուած մի տեղեկագիր (դոնեսենիէ) անցել է թուրքական բանակը։ Տարագուտ քիւրդերի թիւը և որտեղ լինելնին լաւ իմանալով, ես յայտնեցի իմ չորրորդ հարիւրակի հարիւրապետին և առնելով պրապորշչիկի հետ երրորդ ու չորրորդ վզվոդ կոզակները, գնացինք ձերբակալեցինք 11 հոգի լրտես, հագուստնին փոխած քիւրդեր։ Սոցանից Հաճոյ անունով քիւրդը հագել էր սպանուած կոզակի չէրքէզկա բիչ այլափոխուած, որ ունէր հետը ռուսական զրահ։ Քիւրդերից մէկը խոստովանեց բառ առ բառ իմ բոլոր իմացածները և բացորոշ կերպով ցոյց տուեց, որ Մահմէդը՝ Մալազկերտից օսերի ձեռքով բերուած մի տեղեկագրով, երէկ չէ միւս օր գիշերը անցաւ տաճկական բանակը։ Խոստովանեց նաև թէ իրենց պահել են այստեղ օսերը, մատնացոյց անելով մի քանիսներին։ Քիւրդեր ձերբակալուեցին, մենք գնացինք արշաւանքի. վախճանը չիմացայ։ Հրամանատարն ինձ խոստացաւ ի վարձատրութիւն խաչ տալ, բայց ինքը հիւանդանալով ու փոխուելով չիրագործուեց։

Մենք արշաւեցինք դարձեալ և մինչև կէս օրին գրաւեցինք Կոփը ու գիշերեցինք այնտեղ. առաւօտեան նորից առանց որևէ թշնամու յարձակման հետ նահանջեցինք Դերիկ գիւղը։

*) Տես «Համբաւաբեր» № 28.

Թուրքերի ոյժը գիտնալով, վճռուեց նորից վճռականօրէն մինչև Մուշ յառաջանալ։ Մենք ըստ սովորականին յարձակուեցինք Կոփի վրայ, բայց այս անգամ արդէն դեռ Կոփը չգրաւած կոտորուեց Լիզ գիւղը, որտեղ հաւաքուած էին շրջակայքից մօտաւորապէս 5,000-ից աւելի հայեր։ Յարձակման վեցերորդ օրը երբ մենք Լիզ գրաւեցինք, հազարաւոր լլկուած կին ու երեխաներից զատ՝ գտանք հարիւրաւոր կոյտեր մարդկային դիակների, բոլորը կանոնաւոր զօրքից սուինահար։ Լիզ գրաւելիս մեր և երկրորդ հարիւրեակը միասին գնացինք մօտիկ Օտնչոր գիւղը, այնտեղ էլ մի քանի փախստական հայեր եկան, որոնցից մէկը թուրք սպայի սպասաւոր էր եղել։ Մերոնք սովորական խիստ վերաբերմունք ցոյց տալուց յետոյ և հազարաւոր լուտանքներ նորանց գլխին թափելուց յետոյ թողեցին որ երթան Մալազկերտ։ Խալիլ բէկը Բիթլիսի քով պարտուելով՝ նոր ուժերով մէկտեղ եկաւ յարձակուեց Մալազկերտի վրայ, ռուսները իրենց ուժերը յետ քաշեցին և միւս օր նահանջեցինք։ Երբ ես այդ սպասաւորից մի քանի բան հարցրի թուրք զօրքերի քանակութեան մասին, նա ի միջի այլոց ասեց, որ թուրքերը միշտ տեղեկութիւններ են ստանում ռուս ուժերի մասին, իրենց ինչ-որ ազգականներից։

Թուրքերի ուժեղ յարձակման երկու օրուայ հերոսական դիմադրութիւնից յետոյ՝ մենք նահանջեցինք Դերիկ գիւղից Մալազկերտ։ Ժողովուրդը արդէն այդ երկու օրուայ մէջ իւր նահանջի դժբաղդ կարաւանը անտղացրել էր դէպի Կովկաս։ Ետևից գալիս էր և մեր չարանը պաշտպանողական ընդհարումներով։

Ժողովուրդի դրութիւնը անտանելի էր։ Տօթի ու յոգնածութեան տակ հիւանդութեան սարսափելի հունձքն արդէն սկսուել էր։ Ճանապարհների երկու ափերին թափթփուած ապրանքների դիակների հետ, թափթփուած էին և տղամարդկանց ու կանանց և երեխաների անշնչացած ու կիսաշունչ դիակներ։

Եթէ տեսածնիս մանրամասն նկարագրենք՝ հատորներ կը լեցուին։ Անցնենք սակայն՝ յարգանք ռուս հետևակ կոզակներին, որոնք բարեսիրաբար, ըստ կարելոյն հաւաքում էին այդ դժբաղդ կիսամեռներին ու իրենց ձիերի կամ պաշարասայլերի վրայ դնելով՝ փախցնում էին քրիստոնէութիւնը լափող մահմեդական հրդեհից։

Նահանջը ընդհանուր էր. Վանեցիք էլ դեռ Բերկրին չշէնքած հազարաւորներ թողեցին Ջիլանից յարձակուող քիւրդերի գնդակների տարափների տակ։ Շշմած ու խելակորոյս փախստականները խուճապով շունչն էջմիածին առան՝ այդտեղ զատն օրերի զատն բեռն դնելու և հանգստանալու համար։ . —

Երբ հակայարձակումով Դիադինից, գրեթէ նոյն ուժերով, հինգ օրուայ մէջ, առանց լուրջ խոչնդոտների կրկին Մալազկերտ մտանք, հրդեհն արդէն իւր դերը կատարել էր։ Սասունը ընկճուել էր հերոսական մահուամբ, համիդիէի հրամանատար Բէօռ Հիւսէինի, կանոնաւոր զօրքի և թնդանօթախմբերի, անհամեմատ գերազանց ոյժի տակ։ Ամայացել էր Հայաստանի մեծագոյն մասը, թրքական լպիրշ հոգու յատուկ եղեռնագործութիւններով։

Յուսահատ ու սրտաբեկ, անհուն անհամար և արիւնածոր վէրքեր ստացած, մալուլ սգաւոր, լքեցինք հարազատների նշխարները, եկանք մենք էլ եկուորների նման եղբայրակիցների քով հիւրի սպասելու իրագործութիւններին։

Մեր սրբավայրերը թուրքերից ազատ տեսնելու բաղդն ենք փայփայում առայժմ դժբաղդութեանց ովկիանում։ Պիտի կարողանա՞նք արդեօք մահամերձների վերջին իղձերը—նախ կեանք, վերջ լացող մը իմ վրայ—կատարելու թախծանքն ու կարօտը առնել։ Պիտի կարողանա՞նք արդեօք գնալ սրտի վշտերին սպեղանի

արցունքներ թափելու նրանց անթաղ նշխարների վրայ։ Սա մեզ տրուելիք գերագոյն մի խրատունք է, որ համաշխարհային մարդկութեան վրայ է ծանրանում ի գնահատումն անասելի տանջանքների ու միլիոնաւոր անմեղների նուիրական արեան։

(Վերջ)

Տ. Շահբազ և Վ. Կոխիկեան

---

## ԹՈՒՐՔԱԿԱՆ «ՍՊԻՏԱԿ ԳԻՐՔԸ» ԻՐԵՆՑ ՍԵՒ ԳՈՐԾԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս 1916 թուին թիւրք կառավարութիւնը—նոյնն է՝ Թալէաթ և Էնւեր բէյերը երևի մտածելով մօտ ապագայում իր և ընկերների ծանր պատասխանատուութեան մասին՝ իբր աշխարհիս ամենազզուելի եղեռնագործների—շտապել է ինչ-որ մի «Սպիտակ Գիրք» հրատարակել՝ արդարացնելու այն սև գործերը, որոնք ամիսներից ի վեր սուգի մէջ են դրել ամբողջ Հայաստանը։

Այդ գիրքը կրում է այսպիսի վերնագիր.—«Ճշմարտութիւնը՝ հայ յեղափոխական շարժումների և կառավարութեան ձեռք առած միջոցների մասին»։

Քննադատելով սպիտակ այդ տետրը իր ամբողջ այլանդակութեանը մէջ, «Բագու» թերթի Բուխարեստի թղթակից Ն. Նիկոլայեը տալիս է մէջբերումներ, որոնք կարող են շահագրգռել հայ ընթերցողին ևս։

«Մինչև Եւրոպական պատերազմը —ասում է Նիկոլայեը— թէև թիւրք կառավարութիւնը պարբերաբար ընդհանուր հայկական ջարդեր էր կազմակերպում, սակայն և այնպէս՝ օտար պետութիւնների միջամտութեամբը կարելի էր լինում քրիստոնեաներին բացարձակ կերպով ջնջելու մտադրութեան առաջը առնել»։

Եւ յիրաւի, Թիւրքիան, սկսած Սուլթան Համիդից, միշտ վախեցել է քրիստոնեաներին ջնջելու սիստեմատիկ գործից և օգտուել է կամ պետութիւնների գլուխը խառը լինելուց, կամ նրանց անհամերաշխ գտնուելուց։ Հնար ունեցածին պէս՝ կոտորածներ է սարքել, ամեն անգամ որևէ պատրուակ գտնելով, կամ հենց ինքը պատրուակ ստեղծելով։

Համաշխարհային պատերազմը պետութիւններին բաժանեց երկու կռւող բանակների։ Ոչ մէկը այլևս չէր կարող միջամտել՝ կոտորածների առաջն առնելու համար, մանաւանդ որ Թիւրքիայի դաշնակիցները համակամ գտնուեցին այդպիսի վայրենութիւններին։

Եւ ահա Թիւրքիան վերջապէս կարողացաւ գործադրել իր վաղեմի ծրագիրը—ջնջելու հայ տարրը, քրիստոնեայ հպատակներից հնար եղածին չափ ազատուելու և «Թիւրքիան միայն թիւրքերին» թողնելու։

Ջարդերը ուրեմն, աւելի խոշոր չափերով ու սիստեմատիկ կերպով, առանց այլևս քաշուելու և կեղծելու, առանց այլևս կռթնելու թիւրք ժողովրդեան «մոլեռանդութեան» և այլ զգացմունքների վրայ, պաշտօնապէս, կառավարութեան կարգադրութեամբ,—սկսեցին դադարկել Հայաստանը բնիկ ժողովուրդից։ Տեղական, գազանաբարոյ և անխնայ այդ կոտորածները, աքսորները ու հետապնդումները այլևս ոչ բողոքողներ ունեցան և ոչ արգելողներ։ Թալէաթն ու Էնւերը համոզուած էին, որ Բելգիայի աւերածութիւնների նման՝ Հայաստանի աւերն էլ պիտի մնար անպատիժ և... Գերմանիան յաղթական ելնելով, հոսող արիւնը պիտի մոռացուէր։

Այժմ, ըստ երևոյթին, այդ հաւատը խախտուել է, որովհետև Թալէաթն ու Էնւերը վճռել են իրենց «չքմեղանքները» յայտաբարել և «ճշմարտութիւններ» տալ «հայ յեղափոխական շարժումների և կառավարութեան ձեռք առած միջոցների» մասին։

«Սպիտակ գիրքը» ահա թէ ինչպիսի կեղծաւոր խօսքերով և ստայօղ ազգարարութեամբ է սկսում իր «արդարացումները»։

«Հայերը—ասում է նա—միշտ բարիքներ են վայելել օսմանեան կառավարութիւնից։ Պետութիւնը բարեացակամ է վերաբերուել և վստահութիւն է ունեցել նրանց վրայ։ Այդ է եղել պատճառը որ շատ հայեր կարևոր պաշտօնների են հասել պետութեան մէջ... «Միւս կողմից, հայ տարրը, որին օսմանեան կառավարութիւնը միշտ հովանաւորել է բարեացակամութեամբ, ունեցել է այնպիսի արտօնութիւններ և մենաշնորհներ, որոնցից երբէք տրուած չեն եղել որևէ ազգի»...

...«Չը նայելով այդ ամենին, հայ տարրը, սակայն, ոչ միայն չը կարողացաւ գնահատել արդարամտութեան և բարեկեցութեան այն շնորհները, որոնցից օգտւում էր նա, այլ ընդհակառակն, անընդհատ, առիթը չը փախցրեց արգելքներ և դժուարութիւններ ստեղծելու Թիւրքիայի ներքին և արտաքին դրութեան համար»...

...«Սակայն—շարունակում է գիրքը—չը նայելով այդ բանին, կառավարութիւնը, սահմանադրութիւնը վերականգնելուց յետոյ, հեռու մնալով որևէ կողմնապահութիւնից, ջանաց իր օսմանեան բոլոր հպատակներին տալ քաղաքական ամեն տեսակ իրաւունքներ՝ վայելելու համար կեանքի բարիքները. այժ գործ դրաւ մանաւանդ, առանձնապէս հայ տարրին, բաւականութիւն տալու»։

«Հայերին, ինչպէս առաջ, հին կառավարութեան ժամանակ ևս, դիւր չեկաւ այդպիսի արդարամտութիւնը. և նրանք, օգտուելով նոր կառավարութեան տուած ազատութիւնից, ջանացին թուլացնել և անկումի տանել պետութիւնը»։

«Այդպէս, սահմանադրութեան վերականգնումի յաջորդ օրերին իսկ, այն ժամանակ, երբ կառավարութիւնը զբաղուած էր ներքին դժուարութիւններով, ինչպիսին յայտնուեց մարտ 31-ի յետադէմ շարժումների ժամանակ—հայերը, հաւատարիմ իրենց հին ծրագիրներին, անմիջապէս օգտագործեցին այդ յետադէմ շարժումը, որպէս զի նոյն օրն իսկ յեղափոխական դէպքեր առաջ բերէին, որոնք և գոյացրին Ադանայի արիւնոտ օրերը»...

Ահա ձեզ և Ադանայի կոտորածների մեղքը հայերի վզին։ Դուրս է գալիս, որ հայերը, նոր ազատուած թիւրքական սոսկալի վայրենութիւններից, ինչ-որ անհասկանալի անմտութեամբ, յեղափոխութիւն առաջ բերին, թիւրքական յետադիմական շարժումներին ձեռք տուին և Ադանայի կոտորածների պատճառը դարձան։

Ահա ըստ առածի՝ մեղքը «հիւանդ գլխից առողջի գլխին նետելու» շնական մի ձևը՝ Թալէաթների և Էնվերների քաղաքականութիւնից առած։

«Չը նայելով այդ բանին—աւելացնում է գրքոյկը—թիւրք կառավարութիւնը շարունակում էր հայ տարրին առանձին ուշադրութեամբ խնամել և բարեացակամ լինել... Հայերը չը դադարեցին միշտ դժուարութիւններ հանել պետութեան համար և վերջիվերջոյ հրաւիրեցին եւրոպական պետութիւնների միջամտութիւնը՝ թիւրք կառավարութեան «ներքին» գործերի մէջ»։

«Վերջը բանն այնտեղ հասաւ, որ երկրի մահմեդական տարրը, արդէն գիտակցելով հայերի խնդրածների և օտարների միջամտութեան վիրաւորական լինելը—սկսեց զայրանալ բնական կերպով և հայրենասիրական շատ հասկանալի զգացմունքներով»։

«Այդպէս էր իրերի դրութիւնը, երբ ծագեց ընդհանուր պատերազմը»...

Այստեղ էլ—ինչպէս յայտարարում է երիտասարդ թիւրքերի կառավարութիւնը—«Հայերը չը դադարեցին դժուարութիւններ յարուցանելու թիւրք պետութեան ձեռնարկութիւնների դէմ և ակներև կերպով ջանք էին գործ դնում «պետութեան աւերակների վրայ ստեղծելու անկախ Հայաստանը»։

Եւ որպէս զի Թալէաթի ու Էնւերի այդ գրպարտիչ ու ստայօղ խաբէութիւնը հիմնուած լինէր որևէ փաստի կամ վկայաթղթի վրայ, բրօշիւրը մէջ է բերում իբր թէ Ռուսական Կայսեր հրատարակած մի հրովարտակից հատուածներ՝ ուղղուած թիւրքահայերին, Թիւրքիայի՝ պատերազմի մէջ մտնելուց մի ամիս առաջ։

Գրքոյկի հեղինակների խօսքերով «առանձնապէս ուշադրութեան արժանի են այդ հրովարտակի հետևեալ մասերը.»

...«Հայեր, (իբր թէ ասուած է այդ հրովարտակի մէջ) հասել է ձեր ազատութեան ժամը այն բռնակալութիւնից և սարկութիւնից, որ ծանրանում է ձեզ վրայ հինգ դարերից ի վեր և որի զոհերն են եղել ձեզնից շատերը։ Թագաւորի գայխանի ներքոյ միացէք ձեր արիւնակից եղբայրներին, որպէս զի օգտուէք ազատութեան և արդարութեան բոլոր բարիքներից»...

Ինչպէս յայտնի է, այս կեղծած հրովարտակը, որ հրատարակուած է եղել ֆրանսական մի քանի թերթերում, իր ժամանակին ռուս կառավարութեան կողմից հերքուեց պաշտօնապէս։

(Վերջը միւս համարում)

## ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅՈՑ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

Թերթիս աշխատակից արժ. Մ. ա. ք. Մելեանի, Տրապիզոնից, յունիսի 30-ից խմբագրութեանս ուղարկած մի մասնաւոր գրութիւնից քաղում ենք հետևեալը.—

Գալուն պէս եկեղեցին դատարկել ու ճերմակցնել տուի. առաջին պատարագը և ընդհանուր հոգեհանգիստը կատարեցինք կիրակի օրը, յունիսի 19-ին։ Զանգակի ձայնը արտասուքներ էր փրձրել բոլոր լսող հայերի աչքերից. պատարագի ամբողջ ընթացքում մահից ազատուած Տրապիզոնցիները, մանաւանդ կանայք ու աղջիկներ, շարունակ արտասուքներ էին գլորում. հոգեհանգստին կանանց հեստերիկան բռնեց. քանիսին եկեղեցուց դուրս տարան. ահ, տեսարանը, վայրկեանը շատ, շատ էր սրտաճմլիկ։ Միւս կիրակի, ամսոյս 26-ին, պատարագի սկզբին կատարեցի Կայսերական և Հայրապետական մաղթանք։ Երկու մաղթանքներն էլ միանգամայն նորութիւն էին Տրապիզոնցիների համար. թէ հոգեհանգիստների և թէ մաղթանքների առիթով խօսեցի պարտ ու պատշաճը։ Որոշուեց պատգամաւոր ուղարկել ամրացուած շրջանիս պետի (Начальникъ Трапизондскаго укрѣпленнаго раіона) և խնդրել կենդանի մնացածների հաւատարիմ հպատակութեան հաւաստիքը արկանել առ ոտս Նորին Կայսերական Մեծութեան՝ Թագաւորի և Նորին Կայսերական Բարձրութեան՝ Փոխարքայի և հայրապետական օրհնութիւնը հայցել Թիֆլիս ժամանող Վեհափառ Տ. Գէորգ Ե. Կաթողիկոսի։ Անցեալ շաբաթ, հինգշաբթի օրը, 4 պսակ ունեցայ. սաստիկ սրտաշարժ էր ու յուզումնալից. հարսներից մէկը սև էր հագած—այսինքն հենց սև շորերի մէջ էր. տեղիս հայուհիները գրեթէ սև են հագած իրենց հարազատները կորցրած լինելու պատճառով։

Ճանապարհներ շինելու ստիպողական կացութիւնը բանուոր է պահանջում—չկայ. շաբաթը 3 օր խանութները փակել են տալի և բշում դէպի մշակութեան—բշում են անխտիր բոլորին, նաև կանանց...

Առաջիս ցցուած է հացահատիկներ ու մանաւանդ կաղիններ (ֆնտուղ) հաւաքելու էն կարևոր աշխատութիւնը—բանուոր չկայ, գիւղացիներ չկան—ինչ պիտի անեմ։ Խօսեցի գեներալ Շվարցի հետ. մեծ համակրութեամբ վերաբերուեց և խոստացաւ իր կողմից ամեն աջակցութիւն ցոյց տալ։ Բայց ինձ յանձնեց ծրագիր կազմելու։ Ես գիւղացիներից խորհրդակցութիւն կազմեցի. շրջանների բաժանեցինք, մարդիկ ընտրեցինք որ գնան շրջեն և պէտք եղած տեղեկութիւնները բերեն։ Ստացանք տեղեկութիւններ որ բանուոր չկայ և որ սոսկալի դժուարութիւններով են հրաման տալի Տրապիզոն մտնելու... Իսկ կաղինների մասին ասում են, որ 100,000 փթերով է լինում, երկրիս ամենաարդիւնաւոր բերքն է։

Օրերումս Բաբերդի կողմերից անցան Տրապիզոնի շրջանը 14 հոգի Բաբերդցի։ Սրանք եւ 1915 թ. մայիսի 15-ից—28-ը Բաբերդի շրջանի գիւղերից տեղահան արուած հայ բնակչութեան հետ են լինում։ Բաբերդի այլ և այլ կողմերից տեղահան արուածները գալիս խմբւում են Ղարադուլի սարերի վրայ—շրջապատում են ամեն կողմից և սկսում կոտորածը։ Հաւաքուածներից շատերը փախչում են—բայց դէպի իրենց գիւղերը, ուր նորից հասնում են ու բշում է որ կոտորում, է որ ջրամոյն անում, է որ լլկում, է որ կենդանի թաղում, գահավէժ անում... Այս փախչողները 19 հոգի են լինում—13 ամիս ամեն տեսակ սոսկումներ են կրում տանում—վերջը փորձում են սահմանն անցնել և ռուսներին ապաւինել։ Սահմանագլխում թիւրիմացութեամբ սպանւում է ընկերներից մէկը՝ Թեանեան Մարտիրոս (հօր անունը Բաղդասար), վիրաւորւում է Բալախորցի Մարգարը, որ այժմ բժշկւում է տեղիս հիւանդանոցում. 4 հոգի մոլորւում, չեն կարողանում սահմանն անցնել, մնացածները ողջ առողջ հասած են Տրապիզոն և ազատուած են ամեն վտանգից։

Մեր կացութիւնը շատ վատ է։ Շաբաթով լինում ենք կտրուած աշխարհից. պոստ չի ստացւում. հեռագրից կողմնակի անձեր չեն օգտւում։ Ջրերի անցքերը փչացած են, ջուր չի ճարւում, եղածը խմել չի լինի—կուժը 20 կոպէկով բերում են հեռուից։ Միս չկայ. հացը դժուարութեամբ է ձեռք ընկնում. ձուի հատը 5—7 կոպէկ, այն էլ չի ճարւում։ Նաւթ, շաքար, աղ գրեթէ սպառուած են համարւում. կանաչեղէն անգամ չի ճարւում. դատարկ ամայի տներ—որքան կամիք։

---

ՎԱՆ. «Աշխատանք» թերթին յունիս 29-ի թուով Վանից հաղորդում են հետևեալը.

Ամսիս 26-ին տեղս հասաւ պ. Վահան Փափազեանը։ Երկրորդ օրն իսկ այցելեց Վանի ամբողջ պաշտօնէութեանց, ընկերութեանց ներկայացուցիչներուն, խանութպաններուն և արհեստաւորներուն։ Պ. Փափազեանին յանձնուած է նաև Սալմաստի շրջանի լիազօրութիւնը. մի քանի օրէն այնտեղ պիտի մեկնի։ Լսում ենք դարձեալ, որ պիտի նշանակուի նաև Տատեանայի ընկերութեան իբրև տեղիս ներկայացուցիչ։

Ամսոյս 26-ին Քաղաքամէջ անծանօթ անձերէ՝ ոմն «Աղուէս» մականուանեալ երիտասարդի մը գլուխը կտրուած գտնուեր է։

Ուսուցչապետ. Մառ շարունակում է իր պեղումները. մինչև այժմ գտնուած են երկու վահան և մի կարգ աննշան առարկաներ։ Յարգելի ուսուցչապետը մեծ յոյսեր ունի կապած Թոփրա-Կալէի հետ։ Ուզում է «Թոփրա-Կալէ»ի նշնակութիւնն աւելի լուսաբանութիւններով որոշել, քանի որ նկատում է թէ մինչև այժմ այդ բառին թերի նշանակութիւն է տրուած։

Եկարեան պաշտօնաթող եղած է։ Նորա տեղ նշանակուած է ամերիկահայ կամաւորներու պետ՝ Զէնկէլեան։

---

Նախարարական Խորհրդին կից խորհրդակցութիւնը Թիւրքիոյ նորանուաճ երկիրների ցանքսի համար որոշել էր տալ 700,000 ռ.։ Այժմ նոյն Խորհրդակցութիւնը հեռագրով Փոխարքային է փոխադրել դարձեալ 700,000 ռ. Վանի և Դիադինի շրջաններում 30,000 դեսեատին ցանքս անելու համար։

---

# Գ Ե Ղ Ա Ր Ո Ւ Ե Ս Տ

## ԿԵՐԹԱՄ ՅԱՌԱՋ...

Իմ չորս բոլոր
Աշուն, շառաչ
Ու թաթառ...
Եւ ես մոլոր
Կերթամ յառաջ
Անդադար...

Ցրուած հողմէն՝
Կ'անցնեմ խութեր,
Մահ-ափեր…
Ամեն կողմէն
Կ'երգեն մութեր
Մահաբեր…

Օրին մինչ մէկ
Իյնամ գուցէ
Բիւր վէրքէ…
Եւ թանձր մէգ
Իմ փոս գոց!
Ու երգէ…

Իմ չորս բոլոր
Աշուն, շառաչ
Ու թաթառ…
Եւ ես մոլոր
Կ'երթամ յառաջ
Անդադար…

Ազատ-Վշտունի

Թիֆլիս, 1916

---

## Գ. ԲԱՇԻՆՋԱՂԵԱՆԻ ՊԱՏԿԵՐԱՀԱՆԴԷՍԸ *)

Բ

Այս ընդհանուր տեսակէտի վրայ իբր գեղարուեստագիտութեան հաւատամքի վրայ յենուելով ես կաշխատեմ պատկերացնել ընթերցողի առաջ Բաշինջաղեանի պատկերահանդէսը։ Բոլոր 52 պատկերներից 45-ը նոր են, արդիւնք տաղանդաւոր գեղարուեստագէտի անցեալ տարուայ աշխատանքի։ Կան գաղափարական, պատմական, տպաւորիչ նկարներ, ներկայիս «պատերազմական» և արուեստական (տեխնիկական) արժողութիւն ունեցող պատկերներ՝ այն է—nature morte—մեռած բնութիւն։

Արուեստագէտի ամեն մի նկարը ներկայացնում է մի հեղինակութիւն, կեանքի մի հատուած, մարդու հոգու մի հատոր։ Ամեն մի պատկերում հեղինակը արտայայտել է իր մտքերը, ոգեորութիւնը, բնութեան գաղտնիքները, գեղեցկութիւններ և հոգեբանութիւն։

Նկարչութեան մէջ կան շատ ուղղութիւններ։ Կան արուեստագէտներ, որոնք ընդօրինակում են բնութիւնը հարազատութեամբ, այսինքն իսկական բնութեան պատճէններ են հանում։ Բնութիւնը ասելով ի նկատի ունենք ամեն բան. մարդ, անասուն, անտառ, դաշտ, սար, լուսին, և այլն։ Կան արուեստագէտներ, որոնք արտայայտում են կեանքի ամեն երևոյթներ, թէ ներկայի, թէ անցեալի, դառնութիւն, տխրութիւն, մեծահոգութիւն, յանցագործութիւն, եղեռնագործութիւն, առաքինութիւն և այլն։

Կան և նկարիչներ, որոնք վերացական պատկերներ են ստեղծագործում։ Ինչպէս որ գրականութեան մէջ տեսնում ենք ամեն տեսակ ուղղութիւն, աշխարհահայեացք և խառնուածքի (տեմպերամենտի) հեղինակներ, ճիշտ այնպէս էլ նկարչութեան մէջ է՝ լինում։

Կարելի է նկարների մէջ տեսնել չոր արձանագրութիւններ, սկսած մինչև աւիւնի (ֆանտազիայի) և երևակայութեան ամենածայրայեղ թռիչքներ։

Ահա ըստ ցուցակի № 1 նկարը.

Մի գաղափարական պատկեր, վերցրած իրական կեանքից։ Բաշինջաղեանը ուզում է ներկայացնել այն անտառը, որի մասին Լև Տոլստոյը, այդ միստիկ խորհրդագէտը, իր Խոստովանք գրուածքում ասում է. «Գարուն… յիշում եմ, այդ վաղուան գարուն էր, ես միայնակ անտառումն էի, ականջ էի դնում անտառի ձայներին. ես լսում էի անտառի ձայներ և միշտ մտածում էի միևնոյն բանը, որի մասին միշտ մտածում էի այս վերջի երեք տարին։ Վերստին ես որոնում էի Աստծուն»։

Գ. Բաշինջաղեանը նկարել է մի անտառ, և այդտեղ կոմս Տոլստոյին, պատկերացնելով անտառը այնպէս, ինչպէս իր կարծիքով, այդ անտառը ընդունակ էր ներշնչել Տոլստոյին Աստուծոյ գաղափարը։

№ 2 պատկերը Տաճկահայաստանի պատերազմի հետ կապուած անցքերից, որ կոչւում է «Փախստականների ճանապարհը»։ Սարեր, ձիւն և շատ փախստականներ մնացել են ճանապարհին սառած։

Աւելի յաջող է № 3 «Տաճկահայաստանում», երևակայական է, բայց մօտ է ճշմարտութեան. աջ կողմը հայկական մի եկեղեցի, փոքրիկ գետակի ափին. գետակի միւս կողմում տաճիկների ձեռքով հրդեհուած ամբողջ մի հայ գիւղ. իսկ վերևից սառնասիրտ դիտում է լուսինը։

№ 4 նկարը «Գիշերը Կուր գետի վերայ» (Թիֆլիս), որ մեծ տպաւորութիւն է անում, նամանաւանդ լուսնեակի գետի մէջ արտացոլումն հիանալի կերպով պատկերացնելով։

№ 5 «Արարատն արևմուտքին». Բաշինջաղեանը իր տաղանդով ըմբռնել է այդ վայրկեանը…

№ 13 «Անու աւերակներից». ներկայացնում է մեզ այն դուռը, որով մտնում ենք այժմ մեռած այդ քաղաքը։ Անցնենք այժմ № 52 Natur morte—մեռած բնութիւն, որ պատկերացնում է կտրած ձմերուկ, մրգեղէն, գինու բաժակ և այլն։ Այս անգաղափարական մի պատկեր է, որ պիտի զարմացնէ մեզ միմիայն իւր արուեստով (տեխնիկայով) և ներկերի ընտրեալ համաչափութեամբ։

Ցուցակում չի յիշուած երկու մեծ պատկեր Քրիստոսի կեանքից, որոնք բաւականին աջող են։

Բաշինջաղեանը փորձում է և այդ ասպարէզում, այսպէս ասած եկեղեցական տեսակը, բայց այդ գեղարուեստագէտի սիրած ճիւղը չէ։ Բաշինջաղեանը, ինչպէս ասում են, «պէյզաժիստ» է, բնութեան երգիչ. նա լուսնի, գիշերուայ, արևածագի ու արևմուտի, բնութեան անդորրութեան և ամենախաղաղ վայրկեանների սիրահար է։

Բաշինջաղեանը երգում է, բանաստեղծացնում է բնութիւնը։

Հենց այդ է պատճառը, որ նրա նկարները մօտ են մարդու սրտին և շուտով յափշտակում են։

Տ. Աթաբէգեանց

*) Տես «Համբուաբեր» № 28։

---

# Գրական-Գիտական

## ԱՄԲՈՂՋ ՄԻ ԿԵԱՆՔ

(ՊԱՏՄՈՒԱԾՔ Վ. ՊԻԼՆԵԱԿԻ)

1

Ձորակը խորունկ էր և խուլ։ Տղմոտ և դեղնաւուն վայրէջքները, ծածկուած կարմրաւուն եղևնիներով՝ փռւում էին ուղղորդաձև գահաւանդներով մինչև յատակը, ուր հոսում էր փոքրիկ մի աղբրակ։ Ձորի գագաթներին, աջ ու ահեակ, ցցւում էր հնամեայ լուռ, մամռոտ և բաղեղներով խճողուած անտառը։ Վերից ծանրանում էր մռայլ ու ամպամած երկինքը։

Հազիւ էր մարդ ոտք կոխում այդ կողմերը։ Փոթորիկը, ժա-

մանակն ու ջրերը տապալում էին ծառերին, որոնք և տեղն ու տեղը հողի մէջ խրուած՝ փտում էին ու շրջակայքը ողողում ենենու բարկ հոտով։ Փշատերև պատուատակներ ու թփիկներ, խայթող խոզանակի պէս, ծածկում էին գետինը։

Ձորակի խորքում արջի մի որջ կար, իսկ անտառն ամբողջ վխտում էր գայլերով։

Տղմոտ վայրէջքին կար արմատախիլ եղած և դէպի ձորը հակուած մի կաղնի, որ իր արմատը ցցել էր՝ ինչպէս մէջքի վրայ փռուած ու արձանացած մի սարդ։ Մամուռն ու խոտերը պարուրել էին նրա մէն մի ճիւղն ու մազիկը։

Այդտեղ, այդ արմատի խորշերից մէկի մէջ էր, որ բոյն էին հիւսել երկու խոշոր գորշ թռչուններ, արու և էգ։

Ծանրամարմին ահագին թռչուններ էին դրանք՝ սրճագոյն խիտ փետուրներով։ Թևերը կարճ, լայն և ուժեղ։ Ոտերնին ծածկուած էր թանձր աղուամազով, իսկ ճանկերը խոշոր էին և սուր։ Կարճ, հաստ վզների վրայ երերում էր նրանց խոշոր, գրեթէ քառակուսի գլուխը՝ դեղին մեծ և կոր կտուցով ու կլոր-դժժան, ծանրահայեաց աչքերով։

Էգը արուից փոքրահասակ էր, ոտները աւելի նուրբ և գեղեցիկ, վիզը աւելի վայելուչ իր շարժումների մէջ։

Արուն կոշտ էր և ձառաղէմ։ Ձախ թևը պէտք եղածին պէս չէր ծալւում. կախ ընկած էր մնում այն օրուանից, երբ էգին տիրանալու համար մահացու կռիւ էր մղել ուրիշ արուների դէմ։

Նրանց բոյնը ծառի արմատների մէջ՝ բաւական կոկիկ էր և յարմար։ Դէպի ներքև—գահաւանդն էր, վերը—երկինքը։ Հիւսած էր այն՝ ճիւղերից, քարով ու տիղմով ամրացրած, աղուամազով պատած ու յատակած։

Էգը միշտ բնի մէջն էր մնում։ Արուն դուրսը, ծառի արմատի ծայրին, գահաւանդի եզերքը կանգ առած՝ ծանր հայեացքով շուրջն ու հեռուներն էր զննում միշտ և ձորակի խորքերը հետախուզում։ Կծկուած, գլուխը ներս քաշած և թևերը կախ։

2

Իրար էին հանդիպել նրանք ձորից ոչ-շատ հեռու մի տափաստանի վրայ։

Գարնանն էր այդ։ Վայրէջքների վրայ ձիւնը հալուել էր սկսել, իսկ անտառում և ծործորների մէջ գորշ բծեր էին գոյանում։ Խորքում առուակը բացուել էր։ Ցերեկով արևը տաքացնում էր շրջակայքը. մթնաշաղերը երկար էին, կանաչաւուն և շշուկալից։ Գայլերը վոհմակներով թափառելու էին ելել. արուների կռիւների ծայրը բացուել էր՝ էգերի համար։

Երկու թռչունները ծանօթացան երեկոյեան շամանդաղին՝ անտառային մի բացուտի վրայ։

Գարունը, արևն ու քնքոյշ քամին արուի մարմնի մէջ ինչ որ անըմբռնելի ծանրութիւն էր ներարկել։ Առաջ նա այդպէս չէր։ Թռնում էր կամ նստում, ճղում էր կամ լռում՝ որոշ արտաքին կամ ներքին պատճառներից դրդուած։ Երբ քաղցն էր նեղում—թռչում էր մի նապաստակ որսալու։ Արևն էր շլացնում աչքերը կամ քամին անհանգստացնում—ճգնում էր պատսպարուել. եթէ գայլեր էին երևում—շտապում էր խուսափել։

Այժմ այդ բոլորից բացի, ներքին մի նոր, անհասկանալի զգացմունք եւս ցնցում էր նրան ու տեղից շարժում։ Երբ մթնաշաղը իջնում էր ձորերի վրայ, ելնում էր նա իր կայանից և մշուշի մէջ քայլելու պէս՝ անցնում էր բացուտից—բացուտ, ձորից—ձոր՝ իր խոշոր թևերը անշշուկ շարժելով և ակնապիշ՝ կաթնաւուն խորքի մէջ ինչ-որ բան որոնելով…

Երբ մի անգամ էլ այդպէս սաւառնում էր նա ու սահում անտառի խորքերը—մի բացուտի վրայ հանդիպեց իր նմաններին, էգն էլ նրանց մէջ։ Չը գիտէր ինչու, բնազդաբար, նետուեց այնտեղ ներքին մի արտասովոր ույժ զգալով իր մէջ։ Առերլութեան բուռն մի մղումով ընկաւ նա արուների վրայ… ու քիչ յետոյ արիւնահեղ կռիւն էր սկսում անփութօրէն ճեմող էգի համար։

Հակառակորդները նրա չափ ույժ և յամառութիւնը չունեցան, բայց լաւ կացահարեցին, ծուատեցին նրան ու մի թևն էլ ջարդեցին։

Այնուամենայնիւ յաղթանակը մնաց նրան։ Մինչև լուսադէմ տեղ կռուից յետոյ՝ ապարէգի տէրը դարձաւ։

Այդ ժամանակ էր, որ էգը քնքշօրէն մօտեցաւ նրան ու գգուեց վիրաւոր թևը։ Ապա յանկարծ ելաւ գետնից ու թռաւ դէպի ձորակը։

Արուն դանդաղ, վիրաւոր թևը քարշ տալով, բայց իր յաղթանակովը և էգին տիրելու կրքովը արբշիռ՝ հետևեց նրան։

Երկուսն էլ անցան ձորի բերանն ու իջան կաղնու դուրս ցցուած արմատի մի խորշի մէջ, որ յետոյ նրանց բոյնը պիտի դառնար։

Արևելքը շառագունում էր և ծործորների ձիւների վրայ վարդագոյն շիթեր էին ոստոստում գուարթօրէն։

3

Ձմեռուայ ընթացքում անշարժ էին մնում կաղնիները, իսկ նրանց բունը սևաթոյր։ Ձիւնը խորունկ շերտերով, սըրուած մեծ լեռներից, լցնում էր ձորերն ու ծործորները։ Երկինքը մռայլ, օրերը կարճ և գրեթէ միշտ մշուշալից։ Գիշերները շատ աւելի մռայլ էին։ Սառնամանիքից ճաթռտում էին ծառերի բուները և փշրւում՝ ճիւղերը։ Դժգոյն լուսինը հազիւ երբեմն երևում էր ծառերի բարձունքներից և նրա տեսքից ցուրտը կարծես աւելի էր սաստկանում։

Ու ծանր, տանջալից էին երկար այդ գիշերները։ Իրենց բունի մէջ կծկուած՝ իրար էին սեղմւում տաքանալու համար։ Ցուրտը սակայն փետուրներից էլ ներս էր թափանցում, սառեցնում էր մարմինը, փայտացնում ոտք, կտուց և մէջք։ Լուսնի կաթնագոյն լոյսը սարսափ էր ազդում ու նրանք գրեթէ չէին քնում։ Տքնալից՝ շուռ ու մուռ էին գալիս, տեղերնին փոխում։ Նրանց խոշոր աչքերը կանաչաւուն լոյս էին տարածում բունի խաւարի մէջ։

Լուսանալուց քիչ առաջ, երբ լուսինը ծածկւում էր և աղօթարանն էր փայլում, թռչունները սկսում էին քաղց զգալ։ Արուն դուրս էր թռչում որսի։ Թռնում էր դանդաղ, թևերը լայն բացարած և հազիւ ուրեմն շարժելով։ Թռնելիս՝ սուր հայեացքով զըննում էր գետնի երեսը։

Առ հասարակ նապաստակներ էր որսում։ Երբեմն երկար ժամանակ ոչինչ չէր գտնում։ Թռչում էր ձորերի վրայով՝ բունից տասնեակ վերստեր հեռու, դէպի լայն տարածութիւնը, ուր ամառը խոշոր մի գետ էր հոսում։

Եթէ նապաստակ չէր լինում, ջահէլ աղուէսների վրայ էր յարձակւում։ Պաշտպանւում էին յամառ ու երկար։ Պէտք էր լինում արագ վրայ ընկնել, կտուցի շեշտակի հարուածներով շշմեցնել և վեր հանել։ Օդի մէջ գոհը այլևս չէր դիմադրում։

Որսը ճանկերի մէջ՝ արուն ետ էր դառնում դէպի բունը, ուր երկուսով ուտում էին ամբողջը և ոսկորները դուրս նետում։

Ուտում էին ագահօրէն. արիւնոտ ձիւնն անգամ լափում էին։ Ապա արուն նստում էր բոյնից դուրս գահաւանդի ծայրին, ցցում էր փետուրները և մարսելով զբաղւում։

Էգը միշտ բունի մէջն էր։

Երեկոյեան դէմ արուն, յայտնի չէ ինչու, սկսում էր վայել.

—Ուհու, հու… ճչում էր նա խուպոտ. այնպէս՝ կարծես ձայնը անցնում էր ջրի միջով։

Երբեմն այդ մենակեաց ճչացողին նկատում էին գայլերը։ Նրանցից մէկն ու մէկը, անշուշտ քաղցից նեղուած՝ մտածում էր ձեռք ձգել այդ խոշոր պատառը։ Սկսում էր ձորն ի վեր մագլցել։ Էգը նկատելով՝ սկսում էր ճչալ։ Բայց արուն հանգիստ՝ դէպի ցած էր կռանում իր լայն բիբերովը և առանց տեղից շարժուելու՝ թողնում էր գայլը ելնէր այնքան, մինչև որ պոկ էր գալիս վայրէջքից և թաւալգլոր, ձիւնագնդակի պէս, նետւում էր խորքը՝ կաղկանձելով։

4

Գարնանից սկսած, մինչև ամբողջ ամառը, մինչև սեպտեմբեր, նրանք զբաղւում էին որդեծնութեան վսեմ և անհրաժեշտ գործով. մինչև սեպտեմբեր, երբ ոտքի էին ելնելու նորածինները։

Գարունն ու ամառը սքանչելի էր անտառում և ծաղկալի։ Կաղնիները զարդարւում էին պտուղներով և խաղալից բուրումն արձակում։ Ծաղիկների հոտը սփռուած էր ամեն կողմ. Թարմ մանուշակը նախ, զանգակիկն ու արծուամագիկը, յետոյ տուղտն ու մասրենին զարդարում էին ձոր ու զառատափ։

Մայիսին գիշերները կապտաւուն՝ յունիսին սպիտակում էր ու կանաչ գոյն հագնում. վերջալոյսները բոցավառւում էին բոսոր ծալքերով, իսկ մթնելուց յետոյ՝ դէպի ձորերն էր թաւալում արծաթագոյն մշուշը՝ իր գալարումների մէջ պարփակելով ծառ ու ծառաստան։

Սկզբում բոյնի մէջ երևացին հինգ հատ գորշագոյն և կանաչ բծերով ձուեր։ Յետոյ յայտնուեցին ձագերը. մեծագլուխ, լայն ու խոշոր բերան, պատած մոխրագոյն աղուամազով։

Ինչպէս ծկլտում էին նրանք ու բնից դուրս պարզում երկար վզերնին։ Ինչպէս էլ շատ էին ուտում։

Յունիսին արդէն սկսեցին թռնել, թէև դեռ գլուխնին ծանրօրէն երերում էր այս-այն կողմ և թռիչքի ժամանակ շարժումնին շատ անճարակ էր։

Էգը միշտ նրանց հետ էր. խնամալից, զգուշաւոր և բարկացայտ։ Արուն որսի էր գնում։ Պէտք էր շատ գտնել կերակուր. ընտանիքը բաւական շատակեր էր։ Հարկ էր լինում թռնել հեռու, գետն էլ անցնել, որպէս զի ճայեր որսար և ճահիճների մէջ այլևայլ թռչունների հանդիպէր։

Ու երբ բերում էր, ինքն էր կերակրում ձագերին։ Յօշոտում էր որսը և բաշխում։ Յետոյ՝ կլոր աչքերը նրանց վրայ սևեռած՝ հետևում էր ուտելուն։

Երբեմն, ձագերից մէկը եթէ անզգուշաբար շատ էր դուրս կախւում բնից և դէպի ցած գլորւում — դարձեալ արուն էր, որ անմիջապէս հասնում էր ետևից, բռնում ետ բերում։ Յետոյ, բնի մէջ դրած, դեռ երկար իր կտուցովը մաքրում էր նրան և փետուրները յարդարում՝ խնամկոտ քրթմնջիւններ արձակելով։

Գիշերները նա չէր քնում։ Բոյնից դուրս նստած, բաց աչքերը մութի խորքին սևեռած՝ պահպանում էր ձագուկներին և նրանց մօրը։ Ու մինչ այդպէս պահակութիւն էր անում նա պլպլացող աստղերի տակ — ըմբռնում էր կարծես բնութեան հրապոյրն ու կեանքի հաճոյքը և խորունկ գլգլոցով ձորակն ի վար էր նետում գիտցած միակ երգը.

— Ուհու, հու ու...

5

Ապրեց նա այդպէս երկար ձմեռներ՝ ապրելու համար։ Գարնան ու ամրանը ապրեց — ծնելու համար։ Խորհել չը գիտէր։ Բնազդն էր առաջնորդում նրան։ Բնազդով էր անում այդ բոլորը։

Ապրեց շատ ձմեռներ, որպէս զի ուտէր, որպէս զի չը մեռնէր։ Եւ ձմեռները ցուրտ էին, խստամբեր։

Գարնանը նա ծնում էր։ Այդ օրերին նրա երակների մէջ եռում էր տաք արիւնը. արևը՝ նրան էր ժպտում, աստղերը նրան պսպղում։ Այդ օրերին նա այնքան լաւ, այնքան երջանիկ էր զգում իրեն, որ մեծ հաճոյքով ձգձգւում էր արևի տակ, գոցում էր աչքերը, թևերով օդը բաղխում և ճչում հրճուանքով։

6

Աշնանը ձագերը թռիչք էին առնում և հեռանում։ Ծերունիները սովոր՝ անտարբերութեամբ էին բաժանւում նրանցից։

Յետոյ՝ սկսւում էին անձրևները, մշուշը կուտակւում էր և երկինքը թւում էր թէ վայրահակ՝ քարշ էր գալիս անտառների ծայրերին։ Գիշերները խաւար, խոնաւ ու սև...

Ծերունիները նստում էին իրենց դատարկ բունի մէջ, ցուրտից կուչ էին գալիս ու դողում, հառաչում էին, շուռ ու մուռ անում և չէին կարողանում քնել։ Ու նրանց աչքերը կանաչ-դեղնաւուն լոյս էին արձակում։

Արուն այլևս չէր վայում։

7

Այդպէս էր, որ անցաւ նրանց տասներեք տարին։ Ամբողջ մի կեանք։

8

Ապա՝ արուն մեռաւ։

Երիտասարդ ժամանակ, երբ էգի համար կռիւ էր տալիս — վնասուել էր մի թևը։ Տարէցտարի որսորդութիւնը այլևս դժուարանում էր նրա համար. ստիպուած էր հեռուները գնալ։ Գիշերները քուն չը կար. մարմնի և մանաւանդ վիրաւոր թևի մէջ սաստիկ ցաւ էր զգում։

Աւելի սարսափելին այն էր, որ առաջ կարծես թևերի պէտքը այնքան էլ չէր զգում — այժմ արդէն նրանք սկսեցին տարօրինակ ուժգնութեամբ կարևոր դառնալ... և չափազանց դաժանելի։

Գիշերները վիրաւոր թևը քարի պէս քարշ էր տալիս ու հակեցնում նրան դէպի գետին։ Առաւօտները պահ մի նոյն իսկ շարժել չէր կարողանում։ Մի կերպ հազիւ պոկ էր գալիս բոյնից և դուրս գնում որսի։

Ու մի օր էլ էգը թողեց նրան և հեռացաւ։

Գարնան սկզբին, մի երեկոյեան մթնաշաղին էր այդ։ Ելաւ բոյնից և թռաւ դէպի հեռաւոր բացատները։

Արուն որոնեց նրան ամբողջ գիշերը։ Արշալոյսին գտաւ մի ուրիշ արուի հետ, որ աւելի երիտասարդ էր, ուժեղ ու քնքուշօրէն պտտում էր նրա շուրջը։

Ծերունին այդ տեսնելուն պէս՝ զգաց որ այլևս կեանքի վայելքները վերջանում էին իր համար։

Սակայն յարձակուեց կռուելու երիտասարդի դէմ։ Անվստահ և թոյլ, բայց կռուեց։

Երիտասարդը նետուեց նրա վրայ, զայրոյթով ճչաց և սկսեց անխնայ ծուատել մարմինը։

Էգը, ինչպէս շատ տարիներ առաջ, նոյն անտարբերութեամբ կանգնեց հեռու և սպասեց կռուի ելքին։

Ծերունին յաղթուեց։ Արիւնաթաթախ ու յօշոտուած, աչքերից մէկը պայթած՝ հեռացաւ նա բացատից, վերադարձաւ իր բոյնը, մտաւ ու նստեց։ Եւ զգաց, որ կեանքի հետ այլևս վերջացրել էր իր հաշիւները։

Ապրել էր՝ ուտելու և ծնելու համար։ Մնում էր — մեռնել։

Եւ հանգիստ, խաղաղ, առանց զգալու՝ գլուխը կախեց ու մեռաւ։

Գահաւանդից նրա մարմինը գլորուեց դէպի ձորի խորքը և մնաց այնտեղ՝ ոտները կծկուած ու դէպի վեր ցցուած։

Գիշեր էր. աստղերը պայծառ պսպղում էին. բացատների վրայ հրճուանքով ճչում էին թռչունները. հեռուն վայում էր բուէճը...

Պառկած մնաց նա այնտեղ մի քանի օր։ Վերջապէս գտաւ նրան մի գայլ ու կերաւ։

(Փոխադր.) Վ. Փափազեան

## † ՎԻԼԵԱՄ ՌԱՄԶԷՅ

Այս օրերս մեռաւ 65 տարեկան հասակում անգլիացի նշանաւոր գիտնական-քիմիկոս Վիլեամ Ռամզէյ, որ սկսած 1893-ից յայտնի դարձաւ գիտնական աշխարհին իր նոր աշխատանքներովը և մանաւանդ նոր մեթոդովը հիւլէական բնագիտութեան աշխարհում արուած գիտական հետազօտութիւնների։ Ռամզէյը յայտնագործեց օդի մէջ նոր տարրեր-արփոննէօն, կրիպտոն և հիւլիում։ Այս վերջին տարրի վրայ նա առանձնապէս ուշադրութիւն դարձնելով՝ որոնեց այդ երկրի մէջ և յայտնագործեց ուրիշ մետաղներում ևս։ Նա էր, որ յայտնագործեց նաև, թէ ռադիումի հիւլէները լուծուելով՝ երևան են հանում ինչ-որ մի նախնական հիւսուածք—մի լուսարձակումն, որ աստիճանաբար պնդանալով՝ դառնում է հիւլիում։ Այդպիսով, Ռամզէյի աշխատութիւնների շնորհիւ երևան եկաւ, որ սովորական տարրերը ծնունդ են առնում մի ինչ-որ բանից, մի նախնական նիւթից...

Պատերազմի ընթացքում Ռամզէյը նուիրեց իրեն պետական պաշտպանութեան գիտական աշխատանքների և մեռաւ իր գործի մէջ՝ ոչ պակաս հերոսի պէս քան պատերազմի դաշտում ընկածները։

—

Բագուի քաղաքապետը թոյլ է տուել երդ. հաւատ. Ս. Տէր Ղազարեանին հրատարակելու Կ. Կրասիլնիկեանի խմբագրութեամբ հայերէն լեզւով մի ամսագիր՝ «Գործ» անունով։

## ԳԻՒՂԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻՆ Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ

Ի նկատի ունենալով, որ մեր գիւղական դպրոցները կարիք են զգում էժանագին պատկերների, ես առաջ եմ բերում ցուցակ՝ ցանկանալով, որ Կ. Հ. Բ. Ը. Խորհուրդը շրջաբերականով խորհուրդ տայ իր նպաստներով պահուող դպրոցներին ձեռք բերել այդ պատկերները, իսկ չքաւոր դպրոցներին ուղարկել ձրիաբար

1) Животныя и растенія всѣхъ странъ, 24 պատկեր, գինը 2 ռուբ. 40 կ., կտաւի վրայ երեք մեծադիր պատկեր—5 ռ. 2) Царство животныхъ въ картинахъ, 16 պատկեր, գինը 1 ռ. 60 կ., կտաւի վրայ 2 մեծ պատկեր՝ 3 ռ., 3) Новыя картины для первоначальнаго нагляднаго обученія Гусева 20 պատկեր 2 ռ., կտաւի վրայ 4 ռ. 50 կ. Հասցէն՝ Москва, Книжный магазинъ Гросманъ и Кнебель, Петровскія линіи № 12—14.

4) Двунадесятые праздники и воскресенье Христово, 13 պատկեր, գինը պապկով 1 ռ. 25 կ. 5) Міръ въ картинахъ для дѣтей, Лебедева, ч. I, II, III, 30 պատկեր 3 ռ. 6) Четыре времени года: весна, лѣто, осень, зима, Лебедева, 4 պատկեր, 4 ռ., կտաւի վրայ 5 ռ. 10 կ. 7) Таблица умноженія, 10 կ., կտաւի վրայ՝ 50 կ. 8) Классныя стѣнныя таблицы по географіи, 20 պատկեր, 1 ռ. 9) Человѣческія расы 50 կ.

Հասցէն՝ Москва. Книгоиздательству товарищества И. Д. Сытина, Маросейка, № 7.

Յ. Բ. Գրիգորեան

Ցարսկիէ-Կոլոզցի.

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ՄԵԾԱՐԳՈՅ Պ. ԽՄԲԱԳԻՐ.

Բարեհաճեցէք, խնդրում եմ, տպագրել ձեր պատուական թերթի մէջ հետևեալը.

Մեր մէջ հարկաւոր չափով ընդունուած չէ գրի անցնել ժամանակակիցների յիշողութիւնը, հանդիպումները, նամակները, տպաւորութիւնները եայլն, որոնք վերաբերում են մեր թէ մեռած և թէ կենդանի նշանաւոր գրական, հասարակական, գեղարուեստական, եկեղեցական և այլ գործիչներին։ Դրա համար էլ բազմաթիւ արժէքաւոր նիւթեր մնում են անյայտութեան մէջ ու յաճախ ոչնչանում։ Մինչև այժմ մենք չունենք մեր մի շարք գործիչների կենսագրութիւնները, մինչդեռ ուրիշ ազգերի մէջ այդ բանին նուիրւում են մեծ սիրով ու եռանդով։ Համարձակ կարելի է ասել, որ գրականութեան այդ ճիւղը խիստ մոռացուած է մեզանում, եթէ չհաշուենք լոյս տեսած հատ ու կենտ կենսագրականները, որոնք իրենց արժանիքների հետ ունեն նաև մի շարք խոշոր պակասութիւններ։

Ստ. Նազարեանց, Գր. Արծրունի, Պ. Սիմէօնեան, Ա. Յովհաննիսեան, Րաֆֆի, Ծերենց, Պռօշեան, Աղայեան, Շահ-Ազիզ, Ջանշեան, Ներսէս Վարժապետեան, Խրիմեան, Սեդրակեան եայլն, եայլն,—մինչև այժմ հրապարակի վերայ չեն երևացել իրենց մերձաւորների ու ժամանակակիցների վկայութիւններով։ Մինչդեռ ժամանակ է, որ այդ բացը լրացուի։ Չեխովը ընդամենը 12 տարի է, որ մեռել է, սակայն միմիայն նրա նամակները մի քանի հաստափոր հատորներով արդէն տպագրուած են ու ընթերցողներին յանձնուած։ Մօպասանը, Դիկկէնսը, Հիւգօն և այլն բազմահատոր կենսագրականների ու քննութիւնների նիւթ են դարձած ու մինչև այժմ էլ նիւթ են ծառայում։

Մենք ունեցել ենք և ունենք մի շարք արգասաւոր գործիչներ, որոնց մասին ժամանակակիցները շատ բան կարող են պատմել մեզ։ Այդ նիւթերն, անշուշտ, կպարզաբանեն մեր գործիչների կեանքի ու գործունէութեան-ցայժմ մեզ համար անյայտ մնացած շատ գծեր ու շտրիխներ։

Ես ձեռնարկել եմ հրատարակելու տարեկան 1 կամ 2 պատկերազարդ ժողովածու «Հայ մտքի զարգացման անցեալից» վերնագրով, որտեղ պէտք է տպագրուեն այն ամեն փոքր ի շատէ արժէքաւոր յիշողութիւնները, նամակներն ու այլ դոկումենտները, որոնք կարող կլինեն ծառայել յիշածս նպատակին, այն է՝ լուսաբանել մեր գործիչների կեանքն ու գործունէութիւնը, կամ այդ գործունէութեան որոշ շրջանները։ Իւրաքանչիւր ժողովածու բաղկացած կլինի 350—500 էջից։ Բաժանորդագրութիւն չենք բացում, այլ, ժողովածուն լոյս տեսնելուց յետոյ կը յայտարարուի թերթերում ու ծախու կը հանուի։

Դիմում եմ բոլոր մեր գրողներին, հասարակական գործիչներին, հոգևորականներին և մասնաւոր անձամբ խոնարհաբար խնդրելով ուղարկել ինձ նիւթեր ծրագրուած ժողովածուի համար։ Այդ նիւթերը պահանջուած դէպքում շնորհակալութեամբ կը վերադարձուին տէրերին։ Ցանկալի է ստանալ. 1) Յիշողութիւններ, 2) հանդիպումներ, 3) նամակներ, 4) անձնական տպաւորութիւններ, 5) պատկերներ և նկարներ։ Նիւթեր ուղարկողները պէտք է յայտնեն նաև իրենց պայմանները։ Աւելի մանրամասն տեղեկութիւններ ստանալու համար խնդրում եմ դիմել ինձ։

Յուսով եմ, ձեռնարկութիւնս կգրաւի պատշաճ ուշադրութիւն և ես հնար կունենամ մօտիկ ապագայում հրատարակելու ժողովածուի առաջին հատորը։

Հասցէս. Москва, Маросейка, Козьмо-Даміоновскій пр. д. Егорова, кв. 22, Николаю Степановичу Мюрдашюръ.

Ընդունեցէք յարգանքներս

Ն. Միւրդաշիւր

Մոսկուա, 2 յուլիսի

## ՎՐԻՊԱԿ

Համբաւաբեր № 26, սիւնեակ 808, տող 16 վերևից «Ալէքսանդրապոլի գաւառը» բառերից յետոյ բաց է թողուած «ես ենթադրում էի, որ». իսկ № 27, էջ 843, տող 5 ներքևից «գրամոլեռանդութեան» բառից յետոյ բաց է թողուած «պատճառ» բառը։

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

*ԹԻՖԼԻՍ, Եր. Տէր Գրիգորեան. Այս անգամուայ ձեր ուղարկածները, ցաւում ենք, չենք կարող տպագրել։*

*Գաւառական թղթակիցներին. Խնդրում ենք թղթակցութիւնները գրել շատ կարճ և ամփոփ թէ տեղեկութիւնների, նոյնը նուիրատուութիւնների մասին. հնար չունենք մանրամասնութիւններ տպելու։*

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*
*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*



*պարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной цен.